# Խաղաղության ՄԱՅԻՍ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Ի՜նչ պայծառ է այս առավոտ,
Մենք շատ վաղ ենք քնից զարթնել,
Ծաղիկները ցողոտ, շաղոտ
Թերթիկներն են իրենց բացել:

Ողջո՜ւյն մայիս
Դու գովական,
Զքնաղ ամիս
Մեր ցնծության:

Ամենուրեք կյանք են առել
Գործարաններ, դպրոց ու տուն,
Մեր ուժերն ենք իրար ձուլել,
Կոմունիզմի պայծառ գործում:

Ողջո՜ւյն մայիս
Հերոսական,
Ուրախ ամիս
Մեր հաղթության:

Մենք քայլում ենք ուրախ, զվարթ
Շողերի տակ ջերմ արևի,
Դրոշներն են ծփում հանդարտ
Նման ծովի ալիքների:

Ողջո՜ւյն մայիս
Դու հաղթական,
Պայքար ամիս
Խաղաղության:



*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*




№ 5
**ՄԱՅԻՍ**
1951 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 23-ՐԴ ՏԱՐԻ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**ՍՏԱԼԻՆԻ ՄՈՆՈՒՄԵՆՏ-ՔԱՆԴԱԿԸ ԵՐԵՎԱՆՈՒՄ**

Գործ Ստալինյան մրցանակի լաուրեատներ՝ քանդակագործ Ս. Մերկուրովի և ճարտարապետ Ռ. Իսրայելյանի:

# ՀՆԳԱՄՅԱԿ

ՎԱՀԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ



1.

Չոր էր, ամայի հինգ տարի առաջ,
Ոչ մի բույս չկար այս ծաղկած դաշտում,
Ու այգիներն են հիմա մեր կանաչ,
Ու արեգակն է այնպես վառ ժպտում:

Չունեինք աղբյուր, և ոչ էլ առու,
Մեր գյուղում ջրհոր, ջրհոր կար միայն,
Երբ ամռան շոգին արևն էր վառում,
Չկար մի լճակ, որ մարդ լողանար:



Հավաքում էինք պիոներներին
Արձակուրդներին երբեմն՝ ամռան,
Հայացքներս հառած լուրթ հեռուներին,
Վազ տալիս դեպի գյուղը հարևան:

Գնում էինք մենք, որ այնտեղ տեսնենք,
Մրգատու ծառեր բերքից կռացած,
Ուղիղ ու դալար բարդիները սեգ
Մինչև երկնքի կապույտը հասած:

Գնում էինք մենք, որ այնտեղ տեսնենք,
Կանաչ ափերով լուրթ գետակը խոր.
Ոսկե ավազի վրա վազվզենք
Եվ կուշտ լողանանք՝ գեթ ամռան մի օր:

2.

Այն օրից անցել է մի հնգամյակ,
Բայց այնքա՜ն շատ է փոխվել կյանքը մեր
Գալիս է սարից մի զվարթ գետակ,
Լույս տալիս գյուղին՝ շտապում ներքև;

Վազում է ներքև ուրախ կարկաչով
Բանջարանոցներ, այգիներ ջրում.
Ամեն կիրակի մենք մեր ջոկատով
Գնում ենք դաշտը՝ սիրով աշխատում:



Գնում ենք այնտեղ ծառեր խնամում,
Ծառեր մրգատու՝ նորահաս դալար,
Երբ շոգն է նեղում հանվում լողանում—
Գետակում մեր նոր—զով ու կենարար:

Իսկ մանուկները ուրախ արևաչ,
Չեն հավատում մեզ՝ ժպտում խորամանկ,
Երբ որ ասում ենք, հինգ տարի առաջ,
Այստեղ ոչ այգի, և ոչ գետակ կար:



Երբ Ստալինյան մի նոր հնգամյակ
Թևածի դեպի կոմունիզմն հզոր,
Լեռները մեր վեհ, ձորերն ընդարձակ,
Կծածկվեն փարթամ անտառներով նոր:






*Մ. ՔՈՉԱՐՅԱՆ*
*Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ*

*Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ*

Դրամատուրգ Մելիք Քոչարյանը և գրող Անդրանիկ Հովսեփյանը գրել են մի պիես, որը նվիրված է 1920 թվականի Մայիսյան ապստամբությանը և այդ ապստամբության հերոս, բոցաշունչ բոլշևիկ Ղուկաս Ղուկասյանի ռևոլյուցիոն գործունեությանը: Պիեսը կոչվում է «Արգինայի ձորում»:

Նրա բովանդակությունը հետևյալն է:

Դաշնակցական պատժիչ արշավախումբը գնացքով մեկնում է ճնշելու Վարդաձոր գյուղի ապստամբությունը: Բոլշևիկյան ընդհատակյա կոմիտեի հրահանգով, Ղուկաս Ղուկասյանը, որպես ծպտված դաշնակցական զինվոր, միանում է արշավախմբին: Ճանապարհին նա կարողանում է ապստամբեցնել արշավախումբը: Վարդաձորի ապստամբ գյուղացիներն ազատվում են կոտորածից: Բայց Ղուկասը բռնվում է և բանտ նետվում: Դաշնակցականներն սկսում են տանջել Ղուկասին, պահանջում են հայտնել ընդհատակյա կոմիտեի ղեկավարների տեղը: Ղուկասը լռում է, չի մատնում ընկերներին: Դաշնակցական մարդակերները որոշում են Ղուկասին կենդանի թաղել: Հերոսը դրանից էլ չի վախենում: Դաշնակներին չի հաջողվում իրականացնել իրենց դաժան դատավճիռը: Ղուկասը ընկերների օգնությամբ փախչում է բանտից: Անդրկովկասի երկրային կոմիտեի ցուցումներով, Հայաստանի բոլշևիկները նախապատրաստում են բանվորների ու գյուղացիների ապստամբություն: Բոլոր գավառներում նշանակվում են ապստամբության ղեկավարներ: Քսան տարեկան կոմերիտական Ղուկաս Ղուկասյանը նշանակվում է Կարսի ապստամբության ռազմա-ռևոլյուցիոն խորհրդի նախագահ և մեկնում է Կարս քաղաքը:

Մայիսի 8-ին բոլոր գավառներում ապստամբություն է սկսվում, դաշնակցական արյունոտ կարգը տապալելու և Սովետական իշխանություն հաստատելու համար: Բայց Մայիսյան ապստամբությունը չհաղթանակեց: Անգլիական և ամերիկյան իմպերիալիստների օգնությամբ դաշնակներն արյան մեջ խեղդեցին ապստամբությունը: Նրանք գազանաբար սպանեցին ապստամբության բոլոր ղեկավարներին՝ Ալավերդյանին, Մուսայելյանին, Ղարիբջանյանին, Սարուխանյանին և մյուսներին: Կարսից նահանջելու ժամանակ, Արգինայի ձորում սպանվեց նաև Ղուկաս Ղուկասյանը: Ընկերները նրան թաղեցին Արգինայի ձորում: Այդ արյունոտ դատաստանից վեց ամիս հետո, 1920 թվի նոյեմբերին, Հայաստանի բանվորներն ու գյուղացիները, բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, Լենինի և Ստալինի անմիջական ցուցումներով հաղթանակ տարան և սովետական կարգեր հաստատեցին Հայաստանում:

Մեր ամսագրի այս համարում տպագրում ենք երկու տեսարան «Արգինայի ձորում» պիեսից:

## ԱՌԱՋԻ՛Ն ՏԵՍԱՐԱ՛Ն

Բանվոր Միսակի տունը։ Բանտից փախչելուց հետո, ծեծված, ուժասպառ, գլուխը վիրակապով փաթաթած Ղուկասը կանգնել է պատուհանի առաջ և նայում է պարտեզում ծաղկած դեղձենուն։ Դռան շեմքում կանգնած է Մարոն՝ Միսակի աղջիկը։

ՂՈՒԿԱՍ.— Ինչքա՜ն գեղեցիկ է գարունը... Ի՜նչ լավ է գարունը...

ՄԱՐՈ.— Այո, գարունը լավ է, բայց կարգապահության խախտումը բոլորովին լավ չէ, ընկեր Ղուկաս...

ՂՈՒԿԱՍ.— Խախտո՞ւմը... Այդ ո՞ր խախտումը։

ՄԱՐՈ.— Բուդաղյանի հետ խոսելու համար ես քեզ տվեցի երեք րոպե ժամանակ, իսկ դու խոսեցիր հինգ անգամ ավելի։ Եղա՞վ։

ՂՈՒԿԱՍ.— Մարո՜...



ՄԱՐՈ.— Ես այսօր քեզ համար ոչ թե Մարո եմ, այլ պահակ, հասկանո՞ւմ ես։ Ինձ կարգադրված է պահպանել քո հանգիստը։ Ես պատասխանատու եմ քեզ համար։ Գնա և պառկիր։

ՂՈՒԿԱՍ.— Դե լավ, մի՛ բարկանա, ես սրդեն ինձ լավ եմ զգում։ Եկ մի քիչ խոսենք...

ՄԱՐՈ.— Ինչի՞ մասին խոսենք։

ՂՈՒԿԱՍ.— Քո և իմ մասին...

ՄԱՐՈ.— Քո մասին դու բոլորովին չես էլ մտածում։

ՂՈՒԿԱՍ.— Եվ առանձնապես կարիք էլ չկա։ Եթե դու մտածում ես բոլորի մասին և ցանկանում ես բոլորի համար ստեղծել մի նոր, երջանիկ աշխարհ, դա նշանակում է, որ դու մտածում ես նաև քո մասին։ Իսկ եթե ամենից առաջ դու քեզ ես տեսնում, հետո մյուսներին, ապա չես կարող օգտակար լինել ո՛չ քեզ, ո՛չ նրանց համար։ Այդպես են սովորեցնում մեզ ընկեր Լենինը, ընկեր Ստալինը...

ՄԱՐՈ.— Ճիշտ է, կազմակերպության ժողովում էլ դու այդպես խոսեցիր։

ՂՈՒԿԱՍ.— Իսկ հիմա ես քեզ ավելի մանրամասն կբացատրեմ։ Ա՛յ, մենք պայքարում ենք, ուզում ենք կործանել դաշնակցականների արյունոտ կարգը։ Իսկ ի՞նչ պիտի ստեղծենք դրա փոխարեն, գիտե՞ս։

ՄԱՐՈ.— Գիտեմ։ Մենք պիտի ստեղծենք բոլորովին նոր կարգ։

ՂՈՒԿԱՍ.— Ինչպիսի՞ն։

ՄԱՐՈ.— Ինչպիսի՞ն... (Հանկարծ հիշելով) Սոցիալիստական։

ՂՈՒԿԱՍ.— (Մեղմ ծիծաղում է)։

ՄԱՐՈ.— Ինչո՞ւ ես ծիծաղում։ Ճիշտ չե՞մ ասում, ի՞նչ է։

ՂՈՒԿԱՍ.— Ճիշտ ես ասում. Մենք պիտի ստեղծենք սոցիալիստական հասարակարգ։ Բայց ինչպիսի՞ն է լինելու կյանքը սոցիալիստական հասարակարգում։ Դու այդ նոր կյանքը պատկերացնո՞ւմ ես։

ՄԱՐՈ.— Պարզ է, կյանքը կլինի ոչ այնպիսին, ինչպիսին հիմա է։

ՂՈՒԿԱՍ.— Նայիր պատուհանից և ինչ որ ասեմ, միշտ հիշիր։ Ահա մեր առջև տարածվում է Երևանը... Կանցնի երկու, երեք տասնյակ տարի, գուցե ավելի պակաս, և այս կավաշեն, խարխուլ տնակներին կփոխարինի սյունազարդ շենքերի մի ամբողջ անտառ։ Այս նեղ, ծռմռված փողոցների փոխարեն, կձգվեն ուղիղ, լայն պողոտաներ, որոնք գիշերները նույնքան լուսավոր ու պայծառ կլինեն, որքան ցերեկը։ Քաղաքի կենտրոնում կբարձրանա աստղադիտարանը։ Ես կաշխատեմ այնտեղ... Կչափեմ այնտեղից ամբողջ տիեզերքը... Իսկ երբ աշխատանքից տուն վերադառնամ, կսեղմեմ էլեկտրական զանգի կոճակը, ժպտերես մի մանկիկ կբացագանչի. «Մամա՜, պապան է...» Դու իսկույն կգաս դուռը բանալու, իսկ ժպտուն մանկիկը կվազի քո ետևից... Ես կգրկեմ նրան, կհամբուրեմ այտերը... Կանցնի մի քանի րոպե, միասին կնստենք սեղանի շուրջը, ապա կհանգստանանք փափուկ բազմոցի վրա... Իսկ երեկոյան կգնանք թատրոն, կամ զբոսնելու ծառուղիներում... Եվ այդպես ամեն օր... Եվ այդպես ամենքը։ Ահա թե ինչպիսին է լինելու կյանքը՝ սոցիալիստական հասարակարգում։

ՄԱՐՈ.— Հասկացա... Ամեն ինչ հասկացա...

ՂՈՒԿԱՍ.— Ուրեմն պայքարիր՝ անդուլ և անողոք։ Մի՛ մտածիր այն մասին, որ դու հոգնած ես, ծեծված, ուժասպառ... Մի՛ վախենա մահից, բայց պայքարի համար պահպանիր կյանքդ։ Այդպիսին է Լենինը, այդպիսին է Ստալինը։ Այդպիսին պետք է լինենք նաև մենք, եթե ուզում ենք նրանց մեծ գործի զինվորը լինել։

ՄԱՐՈ.— Ճիշտ է։

ՂՈՒԿԱՍ.— Դե եթե ճիշտ է, ուրեմն մի ստիպիր, որ գնամ, պառկեմ։ Նկ նայենք դեղձենում... Տես, ինչ գեղեցիկ է... Կարծես զարդարված նորահարս լինի... Արևը ժպտում է... Սարերը կանաչում են... Իսկ սարյակները գարնան երգն են երգում...

ՄԱՐՈ.— Գարնան երգն են երգում...

## ԵՐԿՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Լուսինը սառ նայացքով նայում է Արգինայի ձորին։ Ժայռի կատարից լսվում է բուի կռինչը։ Ջրաղացպանը, գրեթե խելակորույս, իր հին լաթերն ուսին ձգած, դուրս է գալիս խարխլված ջրաղացից։

ՋՐԱՂԱՑՊԱՆ.— Մնաս բարո՜վ, իմ հին ջրաղաց... Իմ աշխատանքի ու կյանքի ընկեր... Իմ ծանոթ քարեր, ժայռեր, թփուտներ... Եվ դո՛ւ, պայ լուսին, որ այդպես խռոված, փախչում ես Արգինայից, մնացեք բարո՜վ։ Ես էլ եմ փախչում... Ես էլ եմ խռոված աշխարհից... Թող մենակ բուն մնա Արգինայի ձորում և այսպես վայ կանչի ավերակ դարձած Արգինայի վրա... վա՜յ, վա՜յ, վա՜յ...

Հեռվից լսվում են կրակոցներ։
Ջրաղացպանը կանգ է առնում։

Այս ի՞նչ է, էլի կրակո՞ւմ են... էլի կոտորո՞ւմ... Բայց ո՞ւմ վրա են կրակում նրանք... Ո՞ւմ են կոտորում...

Կրակոցները նորից են լսվում։

Ա՜, հասկացա. նրանք իմացել են, որ Արգինայում մեր ջրաղացպանը դեռ կենդանի է... Աստված ինքն է մատնել իմ տեղը... Աստված ինքն էլ մարդասպան է... Մարդասպաննե՜ր, եկե՜ք, այս կողմը եկե՜ք, իմ մեջ դեռ արյուն կա... Ես դեռ մարդ եմ կոչվում...

Մարոն հազիվ ներս է բերում վիրավոր Ղուկասին։

ՄԱՐՈ.— Ո՜վ դու բարի մարդ, մի՛ գոռա, խնդրում եմ։ Մարդասպանները կլսեն քո ձայնը և կգան մեզ

կգտնեն։ Օգնիր փախցնենք այս վիրավորին։

ՋՐԱՂԱՑՊԱՆ.— Վիրավո՞ր...

ՄԱՐՈ.— Այո, ջուրն անցնելիս խփեցին։

ՂՈՒԿԱՍ.— Թող ինձ այստեղ, Մարո՛, իսկ ինքդ փախիր... ազատիր կյանքդ...

ՄԱՐՈ.— Այդ անկարելի է, ես չեմ թողնի քեզ։ Գնանք խնդրում եմ։

ՂՈՒԿԱՍ.— Իզուր է... Այլևս ուժ չունեմ... Այստեղ է իմ վերջը (Պառկում է կանաչ խոտի վրա, գլուխը հենում մամռոտած քարին)։

ՋՐԱՂԱՑՊԱՆ.— Խեղճ տղա... Արյուն կա ճակատին... Եվ ինչքա՜ն նման է իմ որդուն... Գանգուր մազեր ուներ նա, ինչպես այս տղան... Նրան սպանեց դաշնակ խմբապետը և նրա ճակատից էլ հոսեց արյունը, կարմիր արյունը, ինչպես հոսում է սրա ճակատից։ Տանենք, աղջի՛կս, տանենք նրան ջրաղացը։ Ես թոնիրը կվառեմ և նրա համար բաղարջ կթխեմ։ Նա կուտի և կառողջանա...

ՄԱՐՈ.— Ի՞նչ ես ասում, քեռի... Նա ձեռքից գնում է։ Ղուկա՛ս, սիրելի՜ս...

ՋՐԱՂԱՑՊԱՆ.— Ես ճիշտ եմ ասում... Կար մի ժամանակ, երբ ցորենով բեռնված սայլերի քարավանն Արգինա էր իջնում, չախչախը երգում էր, ես բաղարջ էի թխում, մարդիկ մեծ ախորժակով ուտում էին և դեռ հիվանդների համար էլ էին տանում։ Բայց աստված բարկացավ, նախանձեց իմ բախտին... Աշխարհ բերեց դաշնակին, ինգլիզից խիղճն առավ, սուր տվեց տաճկին և ասաց՝ «Կոտորե՛ք բաղարջ ուտողներին... Թող աշխարհում այլևս բաղարջ չլինի»։ Եվ կոտորեցին... Բաղարջը վերացավ աշխարհից... Մար-



*դիկ սկսեցին խուտաբուլսեր ուտել և մեռան ժանտախտից... Ամենքը մեռան... Չախչախը լռեց... Արգինան մնաց դատարկ ու ավերակ...*

ՂՈՒԿԱՍ.— *Ոչի՜նչ, ծերունի... Մեր ամբողջ երկիրն է Արգինայի պես ավերակ դարձել: Նա էլ է խոցված: Բայց նա կբուժվի, նա կառողջանա...*

ՋՐԱՂԱՑՊԱՆ.— *Կառողջանա՞...*

ՂՈՒԿԱՍ.— *Հեռու հյուսիսից դեռ կծագի փրկարար լույսը մեր երկրի վրա... Արգինայի վրա...*

ՋՐԱՂԱՑՊԱՆ.— *Հյուսիսի՞ց, ասում ես:*

ՂՈՒԿԱՍ.— *Այսօր իմ ընկեր Ցավարկովն ընկավ, բացագանչելով. «Հանուն Հայաստանի ռևոլուցիայի»,— բայց վաղը կգան ուրիշ Ցավարկովներ, ուրիշ Ղուկասներ կմիանան նրանց և նոր, հաղթական պայքարի դուրս կգան... Իսկ իմը վերջացավ...*

ՄԱՐՈ.— *Մի՛ խոսիր այդպես, մի՛ խոսիր, Ղուկա՜ս... Դու դեռ պիտի ապրես, քո երազանքը դու պիտի տեսնես իրականացած:*

ՂՈՒԿԱՍ.— *Եթե տեսնեի, կգնայի ուղիղ մեծ Լենինի մոտ և կասեի նրան. «Շնորհակալություն, Վլադիմիր Իլյիչ... Ուղարկեցեք ինձ Պուլկովյան աստղադիտարանը... Ես ուզում եմ ստորել... չափել տիեզերքը... և նրա բոլոր գաղտնիքներն իմանալ...»*

ՄԱՐՈ.— *Եվ դու այդ կանես, անպայման կանես: Ուժերդ հավաքիր. գնանք, հեռանանք, խմբապետները մեր հետքը կգտնեն...*

Նորից կրակոցներ: Ղուկասը ցնցվում է և Մարոյի օգնությամբ ոտքի կանգնում:

ՂՈՒԿԱՍ.— *Կրակեցե՜ք, դահիճնե՛ր, կրակեցե՜ք... Միևնույն է, Հայաստանը շուտով սովետական կլինի* (բուլանում է և նորից պառկում):

ՄԱՐՈ.— *Ղուկա՛ս, Ղուկա՛ս...*

ՂՈՒԿԱՍ.— *Իսկ այժմ... մնացեք բարով՝ աստղեր... Պուլկովո... Լենին... Սովետական Հայաստան...* (մեռնում է):

ՄԱՐՈ.— *Մեռա՜վ, մեռա՜վ...* (Հեկեկալով ընկնում է Ղուկասի վրա):

ՋՐԱՂԱՑՊԱՆ.— *Մեռավ... Ինչպես իմ որդին...* (Հեկեկալով գրկում է Ղուկասի ոտքերը):

Լուռ տեսարան: Լույսը մայր է մրտնում: Աստիճանաբար շառագունում է ճորիզոնը և Երևանի Պետական համալսարանի դիմաց, արևածագի պայծառ ֆոնի վրա գծագրվում է Ղուկասի արձանը:

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՎԶԿԱՊ

*ՍՏ. ՇՉԻՊԱՉՈՎ*

*Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ*

Երբ որ վզկապ դու կապես,
Պահի՛ր, պահպանի՛ր.
Չէ՞ որ դա մեր դրոշի
Գույնն ունի կարմիր:

Կռվում են այդ դրոշով
Զինվորներն արի,
Մեր հայրերն են մարտնչում
Հանուն մայր երկրի:



Երբ որ վզկապ ես կապում,
Դեմքդ պայծա՞ռ է...
Քանի՜, բանի՜ վզկապ է
Պատռել կապարը:

Ամեն բանից մեզ համար
Թա՞նկ ես դու, վզկա՛պ...
Այժմ ավելի՛ ես կարմիր՝
Մեր թափած արյամբ:

Երբ որ վզկապ դու կապես,
Պահի՛ր, պահպանի՛ր.
Չէ՞ որ դա մեր դրոշի
Գույնն ունի կարմիր:

*Թարգմ. Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*



# ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐ ՊԱԿԻՍՏԱՆԻ ՄԱՍԻՆ

*ՆԻԿՈԼԱՅ ՏԻԽՈՆՈՎ* *Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ*

Սովետական հայտնի գրող Նիկոլայ Տիխոնովը անցյալ տարի ճանապարհորդություն է կատարել Պակիստանում:

Պակիստանը կազմվել է 1947 թվականին Հնդկաստանի այն նահանգներից, որոնք գերազանցապես բնակեցված են մուսուլմաններով: Ամերիկյան և անգլիական կապիտալիստներն այժմ Պակիստանը դարձրել են իրենց գաղութը և բացահայտ տեր ու տնօրինություն են անում այնտեղ: Անգլո-ամերիկյան տերերը արհամարհում են Պակիստանի հասարակ ժողովրդին՝ տեղացիներին և նրանց վրա նայում, որպես ստորին ռասայի մարդկանց վրա: Վերջիններս ապրում են սովի և աղքատության պայմաններում:

Ահա այդ պատկերները սեփական աչքերով դիտել և իր փոքրիկ պատմվածքներում վերարտադրել է Ն. Տիխոնովը: Տպագրում ենք Ն. Տիխոնովի Պակիստանին նվիրված պատմվածքներից երկուսը:

## 1. ՆՎԱՃՈՂԸ

*Կարճ վարտիք հագած այդ ամերիկյան փոքրիկ տղան տասներկու տարեկան էր: Նրա մայրիկը և հայրիկը նստել էին երեկոյան թեյի փեշավարյան հյուրանոցի սալոնում և հանդարտ զրուցում էին մի ծանոթ աստիճանավորի՝ ծեր անգլիացու հետ, որը ծայրից ծայր ճանաչում էր ամբողջ Հնդկաստանը:*

*Հայրիկը հենց նոր էր եկել Աֆղանստանից, որն այստեղից մոտիկ է, և պատմում էր այն մասին, ինչ տեսել էր ինքը Քաբուլից դեպի Փեշավար տանող ճանապարհին: Անգլիացին գանգատվում էր, որ ժամանակները վատացել են և վայրենիները, ինչպես նա կոչում էր պակիստանցիներին, գլուխ են բարձրացրել: Հայրիկը հայհոյում էր աֆղաններին, իր՝ ամերիկացու նկատմամբ ունեցած կոպիտ անուշադրության համար, աֆղանական, ինչպես նա էր ասում, նախնադարյան մարդկանց ամբարտավանության և հպարտության համար: Փոքրիկ տղան լսեց, լսեց և հանկարծ ասաց.*

— Հայրի՛կ, այնուամենայնիվ մենք ամեն ինչ կարող ենք անել, որովհետև բոլորից ուժեղ ենք. այդ վայրենիները վախենում են մեզնից։ Ճի՞շտ է։ Մեր շոֆերը պակիստանցի է։ Նա միշտ մինչև գոտին խոնարհվում է իմ առաջ, որովհետև գիտի, որ աշխարհում ամերիկացիներից ավելի ուժեղ ոչ ոք չկա...

Անգլիացին անագե աչքերով նայեց փոքրիկ տղային, մայրիկը հառաչեց, հայրն ավելի պինդ ձգվեց. կապույտ ծուխը վերջինիս ծխամորճից բարձրանում էր դեպի առաստաղը։

— Հա՛րրի, գնա մի քիչ զբոսնիր բակում,— ասաց հայրը։

Հարրին հասկացավ, որ իրեն առաջարկված է թողնել մեծերին։ Նա վազեց դեպի բակը, որի մեջտեղում կանգնած էին մեքենաները։ Մեքենաների մոտ շոֆերները հանդարտ խոսում էին ուրդեբեն, որը Հարրին չէր հասկանում։ Նա սկսեց սուլելով քայլել մեքենաների արանքում և նրանց խոսակցությանը չխառնվեց։

Նա կարդացած տղա էր և արդեն ընթերցել էր շատ վեպեր՝ լի ամեն տեսակ սարսափներով ու տանջանքներով, որոնց ենթարկում են գերիներին։ Եվ բոլոր արկածալի այդ վեպերում վայրենիները դողում էին ճարպիկ և ուժեղ ամերիկացիների առջև, որոնք անում էին այն ամենը, ինչ իրենք էին ցանկանում։ Իզուր էլ հայրիկը այդքան խիստ էր այժմ, երբ ինքը՝ Հարրին խառնվում էր խոսակցությանը։ Իհարկե, նա այդ բոլոր բնիկներից ավելի ուժեղ է։

Եվ Հարրիին հաճելի էր նայել սպիտակ բաճկոններ, լայն վարտիքներ հագած, գլխներին սպիտակ փաթաթան կապած, բարձրահասակ, խաղաղ մարդկանց ու զգալ, որ թեպետ ինքը փոքր տղա է, իսկ նրանք՝ հսկաներ, բայց նրանք դողում են իր առաջ ու պատրաստ են կատարելու իր ամեն մի ցանկությունը։

Հարրին դիտում էր մեքենաները։ Դրանցից մի քանիսի վրա ամրացված էին փայլուն արձանիկներ, իսկ շոֆերների գլխավերևը կախված էին գունավոր փոքրիկ ժապավեններ։ Հարրին գիտեր, որ դրանք երջանկություն բերող թալիսմաններ են։ Դա կարծես այնպես էր, ինչպես այն վեպերում, որոնց մեջ կային լրտեսներ, ավազակներ, վայրենիներ, ծովահեններ և արկածներ՝ տարբեր վայրի երկրներում։

Հանկարծ նա տեսավ մի մեքենա, որի կողքին ամրացված էր մի փոքրիկ դրոշակ։ Այդպիսի դրոշակ նա դեռ չէր տեսել մեքենաների վրա։ Նա ավելի մոտ գնաց և սկսեց դիտել դրոշակը։ Շոֆերը գիրք էր կարդում և չէր նայում նրա կողմը։ Հարրին ուշադիր հա-



յացքով զննում էր դրոշակը, ջանալով լավ տեսնել, թե ինչ էր նրա վրա պատկերված։ Այստեղ նա սուլեց և վեր թռավ։ Դրոշակի վրա պատկերված էր մուրճ և մանգաղ, իսկ դրանցից վեր՝ աստղ։ Դա սովետական մեքենա էր։

Շոֆերը գիրքը դնելով նստատեղին, կասկածանքով նայեց նրան։

— Կոմունիստնե՞ր, Սովետնե՞ր,— ճչաց Հարրին։

Պակիստանցի շոֆերները այդտեղ կանգնած էին։ Այդտեղ էր նաև իրենց շոֆերը։

— Այստեղ կոմունիստներ կան,—ճչաց նա, թռավ դեպի դրոշակը և ձեռքը մեկնեց, որ պոկի այն ու որպես ավար բերի հորը։ Այդ լավ էր մտածված։ Մոսկվայի այդ սարսափելի մարդկանց մասին, որոնցից վախենում են հայրը և մայրը, նա արդեն շատ էր լսել ու կարդացել։ Այժմ նա ցույց կտա, թե ինքն ինչի է ընդունակ։ Այդ դաս կլինի բոլոր բնիկների համար, որոնք համարձակվում են, ինչպես ասաց անգլիացին, գլուխ բարձրացնել։

Բայց այդ պահին սովետական շոֆերը, որը մի քիչ գիտեր պուշտերեն և ուրդերեն, բարձրաձայն ասաց մյուսներին.



— Կորցրե՛ք այդ շան լակոտին, թե չէ ես ինքս դուրս կգամ...

Նա այնպես հանգիստ և վճռականորեն ասաց այդ, որ Հարրին չհասկանալով, այնուամենայնիվ, ակամա կանգ առավ։ Բայց նա իսկույն կարմրեց վրդովմունքից իր դանդաղկոտության համար և կպչուն մատներով բռնեց դրոշակը։

Այդ ակնթարթին մեկի ուժեղ ձեռքը նրան գետնից բարձրացրեց և նա թպրտաց օդում։ Հետո նույն այդ ձեռքը նրան գետնին դրեց, այժմ արդեն մեքենայից մի քանի քայլ հեռավորության վրա։ Կատաղությունից շնչասպառ լինելով, նա նայեց չորս կողմը։ Շուրջը կանգնած էին նիհար, դարչնագույն, բարձրահասակ մարդիկ և լուռ նայում էին նրան։ Նա տեսավ, որ նրանք իսկապես հսկաների նման վիթխարի են, և իր առաջ նրանց նախկին հաճոյանալուց հետք էլ չի մնացել։ Նրա շոֆերը անհետացավ, կարծես թե երբեք էլ չէր եղել։

Հարրին նայում էր մերթ հեգնանքով ժպտացող սովետական շոֆերին, մերթ այդ մռայլ ու լուռ հսկաներին։ Նա ուզում էր կռահել, թե ո՞րն էր նրանցից բռնել իր օձիքը, բայց այդ միատեսակ սառը դեմքերի վրա չէր կարողանում ոչինչ կարդալ։ Նա անվճռականորեն քայլեց։ Մարդիկ ճամփա տվեցին։ Նա անցավ մի քայլ էլ, երերալով, կարծես նրա տակ ալեկոծվում էր գետինը, և հանկարծ ամբողջ թափով վազեց դեպի հյուրանոց, որտեղ իր ծնողները դեռ Ցեյլոնի սև թեյն էին խմում։

Շոֆերների համերաշխ ծիծաղը քամու պես փչում էր նրա մեջքին։ Սովետական շոֆերը դուրս եկավ խցիկից և մատնացույց անելով նրան, ասաց.

— Սա նույնպես նվաճող է։

Տղան խուժեց սալոն և նստեց անկյունում։ Ապա հարմար պահի սպասելով, մինչև ականջները կարմրելով, ասաց.

— Հայրի՛կ, մեր շոֆերին պետք է քշել...

— Ինչո՞ւ։ Նա ի՞նչ է արել,— հարցրեց հայրիկը ծխամորճը մոխրամանին խփելով։

— Նա ոչինչ չի արել, բայց նա... նա նույնպես գլուխ է բարձրացրել, ինչպես այն պակիստանցիները, որոնց մասին այսօր թեյի ժամանակ խոսում էր միստր Գրոուն։

— Օ՜, դու ինձ այդ մասին կպատմես հետո, այդ լուրջ է,—ասաց հայրիկը։—Ապրե՛ս, քեզնից իսկական նվաճող դուրս կգա։

## 2. ԹՌՉՈՒՆՆԵՐՆ ՈՒ ԵՐԵԽԱՆԵՐԸ

Պուրակից պուրակ, կանաչ ու թեթև կայծերի նման սլանում են կանաչ, փոքրիկ թու-

թակների երամները։ Ինձ անծանոթ վառ, կարմրագույն փետուրներ ունեցող թռչնիկները խմում են հին ավազանի ջուրը, վազվզում ծանծաղուտի վրայով, չվախենալով, որ ինչ-որ մեկը քար կնետի իրենց վրա կամ կկրակի։ Պակիստանում բոլորը սիրում են թռչուններին և խիստ արգելված է նրանց սպանելը։ Դրա համար էլ թռչուններն իրենց կատարելապես ազատ են պահում։

Վայն տերրասի վրա, որտեղ սեղանը ծածկված է առավոտյան նախաճաշով, ափսեների արանքով անցնում է մի մեծ կապտասև ագռավ և մեծ կտցով մի քիչ բարձրացնելով ափսեների վրա գցված անձեռոցիկները, նայում է. արդյոք համեղ մի բան չկա՞։ Երշիկը նրան չի հետաքրքրում։ Պանիրը նույնպես, ձուն նույնպես։ Ահա հացի կտորը, հենց այն, որ նրան հարկավոր է։ Ամուր կտցի մի հարված և ագռավն արդեն օդումն է։ Նա ծառաների աչքի առջև տանում է հացի մեծ կտորը դեպի իր բույնը։ Նրան չի կարելի կանգնեցնել։ Չի կարելի վախեցնել։ Նա օգտակար թռչուն է, լավ թռչուն է։ Մարդիկ պետք է նրան կերակրեն։

Կարաչիի ամբողջ երկինքը ծածկված է սև կետերով։ Ուրուրներ են։ Նրանք այնքան շատ են, որ նրանց կոկորդային, վայրենի կանչը լսվում է ամբողջ օրը։ Նրանք անընդհատ շարժման մեջ են։ Դուք ձեռքի մեջ կարող եք վերցնել մսի մի կտոր և մեկնել տերրասի ճաղերից այն կողմը։ Ինչքան էլ բարձր ճախրի ուրուրը, նա կտեսնի մսի այդ կտորը և թափով թռչելով միանգամից, ամենազարմանալի ճշտությամբ, կվերցնի ձեր ձեռքից ու կբարձրանա դեպի երկինք, մի րոպեից հետո դառնալով սև կետ։

— Ինչի՞ համար եք այդքան ուրուր պահում,—հարցրի ես մի տեղացու։

— Դրանք մեր սանիտարներն են,—պատասխանեց նա։—Հավաքում են բոլոր թափթփուկները, բոլոր փտած բաները, բնաջընջում են այգիների և դաշտերի վնասատուներին, նրանք շատ լավ թռչուններ են։

Այդ ուրուրները չէին հարձակվում ո՛չ ագռավների, ո՛չ ծտերի, ո՛չ կաչաղակների, ոչ էլ փոքրիկ թութակների վրա։ Բոլոր թռչուններն ապրում էին իրար կողքի խաղաղ համաձայնության մեջ։

Ամեն առավոտ, ցածում, իմ պատուհանի տակ, աշխատում էին երկու այգեպան։ Ծեր այգեպանը և նրա երիտասարդ աշակերտը պպզում էին և ուժեղ հարվածներով կոտրտում փոքրիկ կավե ծաղկամանները։ Եվ դրանց բեկորներով նրանք ծածկում էին մեծ ծաղկամանների հատակը և վերատնկում տարբեր դեկորատիվ բույսեր։ Նրանք իրենց աշխատանքը կատարում էին հաստատակամորեն, առանց շտապելու, չափված շարժումներով։ Բույսերով պատրաստի ծաղկամանները նրանք դնում էին մի երկար տախտակի վրա և, երբ տախտակն ամբողջովին լցվում էր, վերցնում էին իրենց նիհար, ուժեղ ուսերին և տանում։ Ըստ երևույթին, այդ դեկորատիվ բույսերի պահանջը մեծ էր, որովհետև նրանք օրվա ընթացքում պատրաստում էին այդպիսի շատ ծաղկամաններ և ամեն օր առավոտից նորից սկսում նույն աշխատանքը։ Եվ ահա քանի դեռ նրանք զբաղված էին դրանով, պատրաստի ծաղկամաններում և հողի կույտերի վրա, նրանց կողքին ցատկոտում էին անհամար ճնճղուկները։ Նրանք քջջում էին հողը, թռչում էին մի ծաղկամանից մյուսը, հենց այգեպանների ձեռքի տակից թռչում էին տախտակի վրա, այնտեղից էլ խոտի վրա, մաքրում կտուցները, փոքրիկ փետուրները, իրենց թափ տալիս։ Նորից վերադառնում էին դեպի ծաղկամանները և անդադար այնտեղ փորփրում էին, հիացմունքից ճռվողելով կամ իրենց բարակ և ուժեղ ձայներով ինչ որ բան բացագանչելով։

Այդ ճնճղուկները մինչև այն աստիճան էին հանդգնում, որ նստում էին այգեպանների ուսերին և նայում ծաղկամանների մեջ, որոնք դեռ չէին լցված հողով։ Այգեպանները նրանց վրա ոչ մի ուշադրություն չէին դարձնում։

Հետո ճնճղուկները լվացվում էին տափակ թասի մեջ, որտեղ այգեպանները ջուր էին պահում, թափ էին տալիս թևիկները և նորից այս ու այն կողմ թռչում։

Եվ որտեղ էլ մենք գնում էինք, ամենուր թռչունները երգում էին և կանչում ամբողջ օրը։ Նրանց կուտ էին տալիս, նրանց հա-

մար ջրամաններ էին դնում ամենաաղքատ մարդիկ։ Թռչունները լավ են ապրում Պակիստանում։

Կարաչիի փողոցներով, այդ ճնճղուկների նման վազվզում էին երեխաների խմբերը։ Նրանք կիսամերկ են, շատ աշխույժ, բայց գեղեցիկ՝ արևելքի թուխ գեղեցկությամբ մեծ, փայլուն աչքերով, նիհար ինչպես ճնճղուկները։ Նրանք դպրոց չեն վազում։ Դպրոցներ երկրում համարյա չկան։ Գրագետ են հարյուր մարդուց վեցը։ Երեխաներն աշխատում են։ Ահա գնում են երկու աղջիկ։ Սրանք գլխներին կրում են մեծ մատուցարաններ, որոնց վրա դրված են ուղտի, ձիու, էշի աղբ։ Նրանք այդ հավաքում են կայարաններում, քարվանսարաների մոտ և տանում շուկա, որտեղ սպասում են նրանց մայրերը, որոնք իսկույն այդ ապրանքը վաճառում են։ Շուկայի ճանապարհին աղջիկները ծիծաղում



են, երգում երգեր, կատակում հանդիպող ընկերուհիների հետ։

Ահա մի տան շինարարության վրա, երրորդ հարկում, մի կին մեջքով աղյուս է կրում։ Ներքևում փոքրիկ աղջիկը և տղան օգնում են նրան աղյուսները դարսելու տախտակի վրա։ Նրանք մեծ դժվարությամբ բարձրացնում են իրենց համար ծանր աղյուսները, բայց աշխատում են լուռ և լուրջ, ինչպես հին բանվորներ։

Ահա երեխաները մայրերի հետ միասին դուրս են գալիս ֆաբրիկաների դարբասներից։ Նրանք աշխատել են մի ամբողջ բանվորական օր, ամբողջ ուժով, և սաստիկ հոգնել։ Նրանք գնում են սայթաքելով՝ մայրերի շրջազգեստներից բռնած։

Երեխաների բազմությունը թողնված է ինքնագլուխ։ Եվրոպացի տեսնելիս նրանք, ինչպես ճնճղուկները այգեպանին, շրջապատում են նրան և բացագանչում. «Բախշի՛շ, ռուպիա, ռուպիա»։

Նրանք ողորմություն են խնդրում, նրանք ռուպիա են խնդրում։ Նրանց ծնողներն ասել են՝ «Գնացեք և ինքներդ փող վաստակեցեք։ Եվրոպացիները ձեզ կարող են փայտով հարվածել, կարողացեք խուսափել փայտից, բայց եվրոպացիները կարող են և միանգամից ռուպիա տալ»։ Ռուպիան մեծ փող է երեխաների համար, եթե ընդունենք, որ մեծահասակը ամիսը վաստակում է տասից մինչև վաթսուն ռուպիա։

Եվ ահա դուք շրջապատված եք անդադար ճչացող, ձեր շուրջը թռչկոտող խմբով։ Դուք տեսնում եք խորամանկ աչքեր, մերկ կամ համարյա մերկ, փոքրիկ ձեռքերի և հոնքերի մանկական շարժումներ, հանդուգն ծամածռություններ և լսում եք կանչեր «Բախշի՛շ, բախշի՛շ տու՛ր, ռուպիա տո՛ւր»։

Այդ փոքրիկ երեխաների մեծամասնությունն աղջիկներ են, քթներին՝ փոքրիկ օղակներ, իսկ թևերին՝ լուցկիների նման բարակ, էժանագին ապարանջաններ։ Նրանք իսկապես նման են ճնճղուկներին, որոնք թռչկոտում են այգեպանների շուրջը։ Ինչ-որ թռչնային մի բան կա բնության այդ արագաշարժ զավակների մեջ։ Նրանց մաքուր սրտերը մուրացկանությամբ չեն փչացած։ Նրանք օգնում են ծնողներին։ Երբ այդպիսի

աղջիկը բերում է մի կամ երկու ռուպիա, այդ ավելի շատ է, քան հոր օրական վաստակը, և իհարկե, նրան պետք է փաղաքշեն և համբուրեն այն բանի համար, որ նա կարողացել է ձեռք բերել այդ ռուպիան։ Իսկ երբ ընտանիքում այնքան երեխաներ կան և նրանց համար ուտելիք չկա, բացի դառնացած ալյուրից թխված մի քանի բլիթներից, կամ մի քանի հոտած բանանից, ապա հասկանում ես, թե ինչո՞ւ նրանք այդպես կատաղորեն են բացագանչում «Բախշի՛շ»։

Ծնծղուկները նետվում են դեպի ծիծերի իջևանը. այնտեղ են նետվում նաև այդ փոքրիկ երեխաները՝ մեծ, թեթև մատուցարաններով։ Սրանք և նրանք վիճում են ձիու աղբի համար։ Բայց ճնճղուկները թռչում են մի կողմ, դեպի այգիներն ու պարկերը։ Նրանք իհարկե կուշտ կլինեն։ Պակիստանի երջանիկ թռչուններ։ Նրանք լավ են ապրում, մարդկանցից անհամեմատ ավելի լավ։

Պակիստանի խե՜ղճ, քաղցած երեխաներ։ Նրանք թռչուններից անհամեմատ ավելի վատ են ապրում։

Թարգմ. Լ. ԱՍՄԱՐՅԱՆ





## ԳԱՐՈՒՆ Է ԲԱՑՎԵԼ

ՀԱՄՕ ՍԱՀՅԱՆ



Աղբյուրների զվարթ կանչով,
Հորդ գետերի զիլ շառաչով
Ահա գարուն է բացվել,
Տրակտորների դղրդոցով,
Մեր երգերի զրնգոցով
Ահա գարուն է բացվել։





Սովետական իմ հայրենիք,
Հողի վրա քո երջանիկ
Ահա գարուն է բացվել,
Նոր ցնծությամբ ու նոր փառքով,
Խաղաղության հաղթանակով
Մի նոր գարուն է բացվել։







# ՄԵՐ ՔԱՂԱՔԻ ԳԱՐՈՒՆԸ

*ՄԱՆՅԱ ՀԱԿՈԲՅԱՆ*

*Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ*

Ծանոթ է ողջ աշխարհին
Մեր քաղաքի անունը,
Մեր քաղաքից ողջ տարին
Անբաժան է գարունը:

Զմռան կյանքը շատ է կարճ,
Մարտի պես է հունվարը,
Տնկարանը միշտ կանաչ,
Ու կանաչ է բուլվարը:

Դեկտեմբերին մանուշակ,
Հունվարին՝ վարդ կգտնեք,
Ամեն, ամեն ճարկի տակ
Գարունքվա զարդ կգտնեք:

Ով ձմռանը ճյուր գա մեզ,
Գարնան բուրմունքը կզգա...
Տարին բոլոր գործում են
Նավթահանքերը ճսկա:

Աշխատում են օրն ի բուն
Ու մրցում են իրար հետ,
Երկրին տալիս զորություն,
Լույս ու յուղեր ճոտավետ:

Ստալինը մեր անգին—
Առաջնորդը մեծանուն
Տվել է մեր քաղաքին
Հավերժական մի գարուն:

Արևելքի փառոսն է
Անզուգական մեր Բաքուն,
Նա իր գարնան լույսերն է
Արևելքին առաքում:

Մեր քաղաքից ողջ տարին
Անբաժան է գարունը:
Հայտնի է ողջ աշխարհին
Մեր քաղաքի անունը:



# ԼՈՒՅՍԻ ԵՎ ԳՈՒՅՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Վ. ԽԵՉՈՒՄՅԱՆ

Լուսանկ. Վ. ԱՄԱԼՅԱՆԻ

Մի ոլորուն նեղ ճանապարհ ծառերի ու թփերի միջով երկարում, մտնում է պարտեզ և բաժանվում է երկու մասի: Մեկով կարելի է գնալ պարտեզի խորքը, մյուսով մտնել վարդագույն տուֆից կառուցած տնակը:

Տարվա բոլոր եղանակներին այսպես է, ժողովրդական նկարիչ Մարտիրոս Սարյանի տուն-արվեստանոցը:

Գարնանը, ամռանն ու աշնանը գեղեցիկ ու հյուրընկալ է պարտեզը: Տարվա երեք եղանակներին պատկառելի նկարիչն իր հյուրերին նախ ընդունում է պարտեզում, որտեղ նա ստվերի տակ նստած, հայացքը լույսի ու գույների խաղերին, զբաղված է մտքով ստեղծագործելով: Նա ընդառաջ է գալիս մտածկոտ քայլերով, դժվարությամբ հայացքը կտրելով իրեն շրջապատող գույներից: Հասկանում ես, որ նա այդ ռոպեին էլ գույներ ու պատկերներ է տեսնում, նրան գրավում է արևի նարնջափայլ թրթռանքը կանաչի վրա, ստվերում մգացած հողը. նա մտքով ավարտում է կիսատ մնացած մի նրկար կամ մտածում է մի նորն սկսելու մասին:



Ստալինյան մրցանակի լաուրեատ, ժողովրդական նկարիչ Մարտիրոս Սարյանը իր արվեստանոցում:

Սիրելի նկարիչն իր կյանքի յոթանասունմեկ տարվա հիսուն տարուց ավելին նվիրել է կտավի վրա բնությունն ու աշխատանքը, մտածող ու ստեղծարար մարդուն կենդանացնելու գործին:

Հյուրերն շտապում են նորություններ իմանալ, հարցեր են տալիս, թե այժմ ինչով է զբաղված անվանի նկարիչը:

Մարտիրոս Սարյանը խոստանում է ցույց տալ և կարծես նկարչության մասին չէ խոսքը, բացատրում է.

— Պետք է շատ աշխատել: Պետք է օգնել երիտասարդ նկարիչներին, արվեստագետներին: Պետք է մասնակցել մեր հայրենիքում կատարվող շինարարական կյանքին: Ա՜յ, օրինակ՝ խաղաղության համար...

Նա հիշեցնում է, որ պատերազմի ամերիկյան հրձիգները ուզում են ոչնչացնել ամեն լավ բան, որ ունեն խաղաղասեր մարդիկ: Նա զայրացած հայտնում է, որ մենք այդ թույլ չենք տա, որովհետև մենք սիրում ենք մեր հայրենիքն ու մեր խաղաղ, երջանիկ կյանքը:

Ինչքա՜ն շատ ու կարևոր են այդ բոլոր աշխատանքները, որոնցով զբաղվում է մեր սիրելի նկարիչ-քաղաքացին:

Ո՞վ չի լսել անվանի նկարչի՝ մեր Գերագույն Սովետի դեպուտատի ձայնը:

Իր ողջ կյանքը Մարտիրոս Սարյանը նվիրել է իր հայրենիքին ու ժողովրդին, նրան, որպեսզի մենք սիրենք մեր գեղեցիկ հայրենիքն ու նրա հպարտ բնությունը, մեր ուրախ ու երջանիկ կյանքը:

— Հիմա բարձրանանք վեր,— ասում է նա լայն բանալով դուռն ու ցույց տալով երկրորդ հարկ տանող աստիճանները:

Հյուրերը նրա արվեստանոցումն են: Դա մի մեծ դահլիճ է, լուսավորված տանիքից: Նկարները կախված են պատերից, վահանիկներից, դրված են ուղղակի գետնին, սեղանների վրա... Ինչքա՜ն շատ են նրանք:

Ո՞ր մեկը նայենք: Այս թարմ ծաղիկները, ծաղկած դեղձենիներն ու ծիրանիները, սեգ լեռները, մեր հպարտ Արարատը...

Մենք տեսնում ենք, թե ինչպես, մի արևոտ դաշտում, բամբակ են հավաքում կոլխոզնիկները: Բամբակի թփերի ու դիզված քուլաների մեջ կրակին են տալիս կոլխոզնիկուհիների վառ գույներով գլխաշորերը, հագուստները: Հեռվում երևում են Արմաղանի կապույտ լեռները, տեղ-տեղ ծածկված ամպերի շղարշ հիշեցնող սավաններով: Սա Յուվայի բերքառատ դաշտն է, այն դաշտը, որ երեսուն տարի առաջ ծածկված էր ավազուտներով ու ճահիճներով:

Յուվայի դաշտի կողքին դրված մի այլ կտավ դիտելիս հաստատ կիմանաս, որ նկարված է Կիրովականում: Իրար վրա դիզված սարերը ծանոթ են, սարալանջերն անտառի եզրերից իջնում են, այս ու այնտեղ երևում են մենավոր կաղնիներ, ապա լույսի մեջ կորած արտերի կարկատաններն են գրավում դիտողի ուշքը, ասես հալված ոսկի է թափված տափարակների վրա:

Իսկ Սևանը: Ծփացող ջրի մի կտոր, մի փոքր ափ, որի վրա արդեն երևում են էլեկտրալարի սյուները և զգում ես, որ այդտեղ, գետնի տակ կառուցվել է Հայաստանի ամենամեծ էլեկտրակայաններից մեկը:

Նկարչի կախարդական վրձինով կենդանացած, ծաղկած, վարդագույն դեղձենիները վկայում են, թե ինչքա՜ն առատ է մեր բերքը: Մի քանի այլ կտավների վրա ցրված են՝ խաղողը, դեղձը, խնձորն ու տանձը...

Սա Արարատ լեռն է: Առավոտ է: Շուտով լրիվ կլուսանա, բայց լեռան գագաթին արդեն խաղում են լույսի ցոլքերը: Այդպես իրար մոտ դրված են մի քանի նկարներ՝ Արարատը կեսօրին, երեկոյան, Արարատը և նրա առջև փռված աշնան հարուստ, Արարատյան կոլխոզային դաշտը:

Ահա մի կտավի վրա վառվում են Կարբիդի գործարանի հնոցները: Կարմիր, տաք կրակը ցոլցլում է հնոցներում և բանվորների դեմքերին: Ողջ ցեխը լուսավորված է աշխատանքի կրակներով:

Մեծ կտավների միջից հյուրերին են նայում մեր երկրի անվանի մարդիկ, նրանց կենդանի դիմանկարները: Թվում է նրանք շարժվում են, մտածում, խոսում, ինչպես տեսնում ես նրանց կյանքում:

— Սա իմ վերջին աշխատանքն է,—



«Ժողովուրդների ստալինյան բարեկամություն»:

Գործ Մ. Սարյանի

տասում է Մարտիրոս Սարյանը ցույց տալով մի հսկայական կտավ:

Նկարի երկու կողմերին առատ միրգ է նկարված: Կենտրոնում փռված է մի անծայր երկիր, որտեղ երևում են և՛ հայկական լեռներ, և՛ ռուսական դաշտեր, ֆաղաքներ, գյուղեր, գործարաններ, էլեկտրակայաններ... Սա ողջ Սովետական հայրենիքն է: Ահա Մոսկվան, Կրեմլի աշտարակը, Լենինի դամբարանը: Հեռվում, հողի վրա հենած իր թևերը, դեպի երկինք է բարձրանում մի շենք ծիածան: Կենտրոնում կանգնած է Ստալինը, կանգնած է մտածկոտ հայացքով և միաժամանակ ժպտերես: Մանուկները ծաղկեփնջերով նետվում են դեպի նա, նրանց ծնողները՝ հայրերն ու մայրերը, մեր բազմազգ ժողովուրդները շրջապատել են մեծ Առաջնորդին...

Նկարը կոչվում է «Ժողովուրդների ստալինյան բարեկամություն»: Այդ նկարը անվանի նկարիչ Մարտիրոս Սարյանը նվիրել է Հայաստանում Սովետական կարգեր հաստատվելու 30-ամյակին:



Ստալինյան մրցանակի լաուրեատ, բանաստեղծ Ավետիք Իսահակյանի պորտրեն:



# ՆԵԼՍՈՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ ԱՆՈՒՆՈՎ

Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Լենինականի Պուշկինի անվան դպրոցի պիոներական դրուժինան երկու տարի է, որ կրում է Սովետական Միության կրկնակի հերոս Նելսոն Ստեփանյանի անունը։ Դրուժինան անվանակոչվեց 1950 թ. հոկտեմբերին, երբ պարզվեց, որ այդ դպրոցի պիոներները մեծ հաջողություններ են ունեցել ուսման մեջ։ Լենինականի ՀԼԿԵՄ քաղկոմի որոշումն այդ մասին, մեծ ուրախություն առաջացրեց պիոներների սրտերում։ Անվանակոչմանը նվիրված հավաքից հետո դրուժինայի խորհուրդը որոշեց նամակ գրել պանծալի օդաչուի ծնողներին։ Հասցեն իմացան և գրեցին։ Նոյեմբերին ուղարկվեց առաջին նամակը։ Նելսոնի հայրը՝ Գևորգ Ստեփանյանը պատասխան նամակում պատմեց որդու և նրա ընտանիքի մասին։ Նրա երկրորդ նամակն ավելի շուտ մի ծանրոց էր, որտեղ բացի երկտողից կային բազմաթիվ նյութեր, հոդվածներ ու նկարներ, որոնք 1941 թվականից սկսած լույս էին տեսել թերթերում, ամսագրերում և առանձին գրքույկներում։*

*Դրուժինայի և հերոսի ընտանիքի կապը քանի գնաց ամրացավ։ Օդաչուի ծնողները պիոներներին տեղեկացրին Նելսոնի կիսանդրու բացման մասին, իսկ դրուժինան ուղարկած բոլոր նյութերն ու նկարները զետեղեց գեղեցիկ ալբոմներում և պահում է պիոներական սենյակում։*

*Այս մտերմական կապն ավելի զգաստացրեց դրուժինայի պիոներներին։ Նրանք սկսեցին ավելի լավ սովորել։ 578 պիոներների մեծագույն մասը ուսումնական տարվա 3-րդ քառորդում ոչ մի «2» գնահատական չունեն։*

*Նրանց լավ սովորելը և եռանդուն աշխատանքը ցույց է տալիս, որ դրուժինան ուսումնական տարին կավարտի բարձր ցուցանիշներով։*

*Պիոներական աշխատանքն էլ աշխուժացավ։ Ջոկատները հատուկ հավաքույթներ նվիրեցին Նելսոնի կենսագրության ուսումնասիրությանը, կազմակերպեցին զրույցներ՝ «Ինչո՞ւ լենինգրադցիները նրան մրրկահավ կոչեցին», «Սովորել Նելսոնի նման» և այլ թեմաներով։*

*Գարնան արձակուրդի օրերին դրուժինայի լավագույն պիոներների մի մեծ խումբ մեկնեց Երևան, ուր այցելեց հերոսի ծնողներին, ծաղկեպսակ դրեց Նելսոնի արձանին և հանդիպում ունեցավ հերոս օդաչուի որդու՝ Վիլսոնի հետ։ Այդ էքսկուրսիայից հետո պիոներներն ավելի մեծ եռանդով շարունակեցին ուսումը, որ բարձր գնահատականներով ավարտեն ուսումնական տարին։*




*Լենինականի Բերիայի անվան դպրոցի Ն. Միխայլովի անվան դրուժինայում լավ է կազմակերպված ընկերական օգնությունը ետ մնացողներին։ Շատ մտերիմ են միմյանց հետ հատկապես 6-րդ դասարանի Մոլոտովի անվան ջոկատի պիոներները։*

*Ջոկատի խորհուրդը ուսումնական տարվա հենց սկզբից սկսեց աշալուրջ հետևել*

ամեն մի պիոների ուսմանը։ Խորհուրդը հաշվի առավ, թե որ պիոները քանի դաս է բաց թողել և որ առարկայի որ թեման է վատ յուրացրել։ Այնուհետև սկսվեց պայքարը երկուսների դեմ։

Ընկերները միմյանց սկսեցին օգնել, հիշելով, որ ջոկատի պատիվը միշտ բարձր պետք է պահել։

Եղիկյան Ռիման բաց էր թողել թվաբանության բաժանման թեման և դժվարանում էր հասնել ընկերուհիներին։ Ջոկատի խորհուրդն այդ հարցը քննեց և հանձնարարեց գերազանցիկ Օդաբաշյան Ռիմային օգնել ընկերուհուն։ Ընկերուհիներն սկսեցին միասին պարապել։ Բաց թողած թեմայի չիմանալը դժվարացնում էր նորի յուրացումը։ Դրա համար էլ նրանք պարապում էին ամեն օր։ Նախ սովորում էին նոր դասերը, ապա կրկնում բաց թողած թեմայի նյութերը։ Նրանք լուծում էին բազմաթիվ խնդիրներ և օրինակներ։ Մինչև որ Եղիկյանը լրիվ չէր ըմբռնում հինը և նորը, պարապմունքը չէին դադարեցնում։ Այսպիսով Եղիկյանը 4-րդ քառորդը դիմավորեց լավ գնահատականներով։ Օդաբաշյանը կարծում է, որ ընկերուհին տարեվերջի քննություններն իրենից լավ կտա։

Այսպիսի օգնություն է կազմակերպված նաև մյուս օղակներում։

Ալեքսանյան Արաքսյան օգնել է Կոչոյան Էլվինին, որը բնագիտությունից բաց է թողել մի թեմա։ Եվ հիմա Էլվինը ոչ միայն ետ չի մնում ընկերուհիներից, այլև ձգտում է հասնել Ալեքսանյանին։ Էլվինն այժմ միայն «4» է ստանում և տարեվերջի քննություններից բոլորովին չի վախենում։

Հայրբաբամյան Վարդիթերը շատ մտերիմ է Կարապետյան Գոհարի հետ։ Երբ պարզվեց, որ Գոհարը հանրահաշվի դասեր է բաց թողել և ետ է մնում, Վարդիթերը ցանկություն հայտնեց օգնել ընկերուհուն։ Գոհարը 2-րդ քառորդում հանրահաշվից «3» ստացավ, իսկ 3-րդ քառորդում՝ «4»։



Այսպես մտերիմ են ջոկատի բոլոր պիոներները։ Սրա շնորհիվ է, որ ջոկատը երեք տարի լրիվ կազմով փոխադրվում է դասարանից դասարան։

Բարձր առաջադիմությամբ ու եռանդուն աշխատանքով ջոկատն արժանացավ Վ. Մ. Մոլոտովի անունը կրելուն։

Ջոկատավար Ռայա Բաղդասարյանը և ջոկատի խորհուրդը լավ կազմակերպեցին նաև պիոներների հանգիստը գարնանային արձակուրդների ժամանակ։ Ջոկատը պարապմունքներ ունեցավ «Լենինի և Ստալինի դպրոցական տարիները» թեմայով, այցելեց Լենինական քաղաքի պատմության թանգարանը, տեքստիլ կոմբինատը և մեխանիկական գործարանը։ Կազմակերպվեց ինքնագործունեության միջօղակային օլիմպիադա։ Պիոներները դիտեցին տիկնիկային թատրոնի «Խաղասեր տղաները» և քննարկեցին հավաքույթում։

# ՍՏԱԼԻՆԻ անվան դրուժինայում

Լենինականի № 39 դպրոցի Ստալինի անվան պիոներական դրուժինան անընդհատ համալրվում է պիոներների նորանոր օղակներով։ Երրորդ դասարանի աշակերտուհիներից շատերն արդեն ընդունվել են պիոներական կազմակերպության մեջ և ճշտությամբ կատարում են երդումը։ Լավ և գերազանց սովորելու համար նրանք 8-րդ դասարանի կոմերիտուհիներից ստացել են մի գեղեցիկ նվեր։ Նվերը պատկերազարդ ալբոմ է, որը նվիրված է մեծ Ստալինի կյանքին ու գործունեությանը։ Այդ նվերն ավելի է ոգևորել ջոկատի պիոներներին և նրանք ոչ մի առարկայից «2» չեն ստանում։

Մեծ առաջնորդի անվանն արժանացած այդ դրուժինայում կան ջոկատներ, որոնց անդամներից և ոչ մեկը «2» չունի։ Մատրոսովի անվան ջոկատի պիոներները ոչ միայն «2», այլև «3» չունեն։ Նրանք բոլորն էլ սովորում են միայն «4» և «5» գնահատականներով։

Ահա չորրորդ դասարանի Պավլիկ Մորոզովի անվան ջոկատը։ Այդ դասարանի աշակերտուհիները երկու տարի է, որ պիոներ են ընդունվել։ Պիոներական կազմակերպության շարքերն ընդունվելու հենց առաջին օրը նրանք որոշեցին բարձր պահել հերոս պիոների պայծառ անունը և շատ լավ են կատարում իրենց որոշումը։ Նրանք երկու տարի է, որ ոչ մի «2» չեն ստանում։





# Ֆիզիկայի ՀԱՎԱՔՈՒՅԹԸ

*Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ*

Մեր դասարանի աշակերտները ֆիզիկայով շատ էին հետաքրքրվում. բայց նրանցից մի քանիսը այդ առարկան լավ չէին յուրացրել: Դրա համար էլ մենք որոշեցինք առարկայական հավաքույթ կազմակերպել: Այդ մասին հայտնեցինք ֆիզիկայի դասատու՝ ընկեր Մ. Տարախչյանին: Նա համաձայնեց:

Երեկոյան ժամը 6-ին օղակավարների զեկույցներից հետո հավաքույթն սկսվեց: Հավաքույթին ներկա էին մեր դպրոցի բոլոր ուսուցիչները և ուսուցչուհիները: Առաջինը ամբիոն բարձրացավ Հ. Դավթյանը:

— Սեպտեմբերի մեկին ֆիզիկայի դասատու ընկեր Մ. Տարախչյանը մեզ պատմեց ֆիզիկայի ներածությունը: Ես լսեցի, թե ինչպես մեծ գիտնական Պոպովը ստեղծեց ռադիոն, Յաբլոչկովը և Լոդիգինը էլեկտրականության գյուտն արեցին, որից հիմա օգտվում է ամբողջ մարդկությունը: Երբ մեր դասատուն պատմեց «Հաղորդակից անոթներ» դասը, ես հասկացա, որ աղբյուրները հաղորդակից անոթների օրենքով են գործում:

Տարեսկզբին ես ֆիզիկայից «4» գնահատական էի ստանում, իսկ հիմա ստանում եմ «5»:

Այնուհետև զեկուցեցին Ժ. Հարությունյանը, Դ. Կարապետյանը, Լ. Սահակյանը և Դ. Գևորգյանը:





Ջոկատի պիոներները հավաքույթից շատ գոհ մնացին:

*ԱԻԴԱ ԱԴԱՄՅԱՆ*
(Լենինականի № 11 դպրոցի Միկոյանի անվան դրուժինայի երրորդ ջոկատի խորհրդի նախագահ)

# Գարնանային ԾԻԼԵՐ

ԳՐ. ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ

Որքա՜ն լավ է, որքա՜ն սիրուն,
Երբ գարուն է մեր աշխարհում,
Երբ արևն է շողում պայծառ,
Թափում վարսերը ոսկեվառ,
Եվ երբ հողն է կրկին բուրում—



Որքա՜ն լավ է, որքա՜ն սիրուն։
Եկեք գնանք, պատանիներ,
Արևաշող դաշտերը մեր,
Նայենք չքնաղ այս դաշտերին,
Այս դաշտերի կանաչ ծովին,
Շաղն է իջել թարմ կանաչին,
Շողն է խաղում նրա միջին,
Անցնենք շաղի, շողի միջով,
Շնչենք հանդի բուրմունքը զով։
Տեսե՛ք, տրակտորն այստեղ հևում,
Մերթ կորչում է, մերթ երևում,

Եվ շրջելով այս արտերում՝
Ակոսներ է անվերջ շարում։
Իսկ այն սարի թավիշ լանջին
Աղջիկների օղակն է ժիր,
Ահա այնտեղ առավոտից,
Արտն է մաքրում մոլախոտից։
Այս մարդիկ են աշխատանքի
Գարուն բերել հաղթանակի։
Այստեղ, գիտե՞ք, ամեն ինչ կա,
Այսօր միայն բերքը չկա,
Բայց դե բերքն էլ անշուշտ կգա,
Գարնան մեջ էլ ամառը կա։
Մեր կյանքը միշտ երգ է դառնում,
Երբ ծիլերն են հասակ առնում,
Ամեն մի ծիլ հասկ է վաղվա,
Նա միշտ անհոգ կմեծանա։



ՆԿ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

## ՊԱՇՏՊԱՆԵՆՔ ԲԵՐՔԸ

ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

Ջոկատավար Աստղիկ Հակոբյանն այս անգամ իրենց պիոներական հավաքույթին հրավիրել էր կոլխոզի գյուղատնտես ընկեր Ավագյանին, որպեսզի նա պատմի կոլխոզային դաշտերի վնասատու մկների և դրանց դեմ պայքարելու միջոցների մասին։

— Սիրելի երեխանե՛ր,— սկսեց գյուղատնտեսն իր խոսքը,—աշնանը, բերքահավաքի ժամանակ մեր դաշտերում ես տեսել եմ, թե ինչպես դուք՝ պատանի պիոներներդ հնձված արտերում հասկահավաք եք կազմակերպում և կոլտնտեսության հարյուրա-

վոր ու հազարավոր կիլոգրամ հացահատիկը փրկում կորստից։ Այդ իհարկե, շատ խրախուսելի գործ է։ Սակայն պիոներներից ոմանք դեռ չեն մտածել, որ կոլտնտեսություններում հաճախ ցանքերին ավելի շատ կորուստներ են պատճառում փոքրիկ, մեր շատերի կողմից ուշադրության չարժանացող մկները։ Հիմա ես ձեզ կպատմեմ այդ կրծողների մասին և դուք կիմանաք, թե այս գարնան օրերին, ինչքան մեծ նշանակություն ունի մկների դեմ պայքարը։

Երբ երեխաներից մեկը մի մուկ է ոչնչացնում, դուք չեք գնահատում նրա կատարած չափազանց օգտակար գործը։— Մի մուկն ի՞նչ է որ,— մտածում եք դուք։ Իսկ եթե նույն երեխան աշնանը 50 կիլոգրամ հասկ հավաքի նրա մասին գրում եք թերթերում։ Սակայն մի մուկ ոչնչացնելը մի քանի հարյուր կիլոգրամ հասկ հավաքել է նշանակում։

Մկները շատ արագ են բազմանում։ Գարնան, ամռան և աշնան ամիսներին մի էգ մուկը 20—25 օրը մի անգամ 10—12 ձագ է ունենում։ Այդ ձագերից յուրաքանչյուրը ծնվելուց 45 օր հետո նոր սերունդ է տալիս։ Հաշվել են, որ 5 զույգ մկան մի տարվա սերունդը կարող է հասնել անհավատալի մի թվի՝ մինչև 10.000-ի, եթե նրանք չոչնչանան։

Մինչև 10.000...

Այժմ հաշվենք, որ ամեն մի մուկ մի տարվա ընթացքում ուտում և փչացնում է երկու, երկու և կես կիլոգրամ հացահատիկ։ Նշանակում է, եթե 5 զույգ մուկը գարնանը չոչնչացվի մի տարվա ընթացքում կարող է ուտել մինչև 20—25 հազար կիլոգրամ հացահատիկ...

Լեռնային շրջաններում մկները մեծ վնաս են հասցնում նաև կարտոֆիլին ու բանջարանոցային մյուս կուլտուրաներին։

Այս բոլորը հաշվի առնելով, մեր կոլտնտեսություններն ամեն տարի գարնանն ու աշնանը ուժեղ պայքար են ծավալում մկների ոչնչացման համար։ Այդ գործում մեծ անելիքներ ունեն պիոներական կազմակերպությունները։ Դուք օրինակ, կարող եք շատ հացահատիկ ու կարտոֆիլ փրկել կորստից, եթե իմանաք, թե ինչպես են մկներին ոչնչացնում։

Մկներին ոչնչացնում են մկնդեղով, ա՛յ այս թունավոր նյութով։ Սա խառնում են գարու ալյուրի հետ և շաղախում ջրով, ապա խմորի փոքրիկ գնդիկներ շինում և գցում մկների բները։ Մկների դեմ այս ձևով պայքարելու համար հեկտարին ծախսվում է մոտավորապես կես կիլոգրամ գարու ալյուր և 15 գրամ մկնդեղ։

Գիտությունը գյուղատնտեսության վնասատուների դեմ պայքարի նորանոր, ավելի արդյունավետ միջոցներ է գտնում։ Օրինակ՝ մկների բները փոշոտում են կալցիում արսենիտ կոչված թույնով։ Յուրաքանչյուր բնանցքի մեջ լցնում են մի գրամ փոշի. մկները ներս ու դուրս անելիս քսվում են թույնին։ Նրանք իրենց սովորության համաձայն սկսում են մորթիները մաքրել։ Լիզում են իրենց թաթիկներին ու մարմնի այլ տեղերին քսված փոշին, թունավորվում, սատկում։

Մկնդեղ կամ կալցիում արսենիտ գործածելուց բացի, մկներին կարելի է ոչնչացնել նաև այլ եղանակներով։ Օրինակ՝ բները ջրով են ողողում, կամ ալյուրի ու չհանգած կրի խառնուրդով պատրաստված փոքրիկ գնդիկներ են շաղ տալիս մկների բների մոտ։ Մկներն ուտում են այդ գնդիկները, այրվում և այնքան ջուր են խմում, որ խեղդամահ են լինում։

Դուք պետք է հետևեք, որ հնձից հետո դաշտում հարդի կամ ծղոտի կույտեր չմնան։ Դրանք լավ ապաստարան ու ձմեռելու համար տեղ են մկների համար։

Երեխանե՛ր, ամբողջ եռանդով պայքարեք մկների դեմ՝ 1951 թվի բերքն անկորուստ հավաքելու համար։



Գյուղատնտես ընկեր Ավագյանի զրույցը մեծ աշխուժություն առաջացրեց պատանի պիոներների մեջ։ Պիոներական ջոկատը պարտավորվեց հետևյալ օրն իսկ հետազոտել կոլխոզի ցանքերը, դաշտերում հայտնաբերել մկներին և ոչնչացնել նրանց։





# ԳՐՔԵՐԻ գանձարանում

*Ա. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ*

*Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ*

Այս տարի մայիսին լրանում է Հայաստանի Ալ. Մյասնիկյանի անվան Պետական Հանրային գրադարանի երեսուն տարին:

1921 թվին գրադարանն ուներ ընդամենը 40 հազար գիրք: Գրադարանը տեղավորված էր մի նեղլիկ շենքում: Այն ժամանակ ընթերցողներն էլ քիչ էին: Անցան տարիներ, գրադարանն էլ մեծացավ: Մեծացավ նաև նրա ընթերցողների թիվը:

1940 թվի ամառը Հանրային գրադարանը տեղափոխվեց Երևանի ուսանողական թաղամասում գտնվող իր նոր շենքը: Ակադեմիկոս Թամանյանն այնպես էր նախագծել շենքը, որ հարմար լինի թե՛ ընթերցողների, և թե՛ գրքերի պահպանության համար:

Առանձին ընթերցասրահներ ու կաբինետներ են հատկացված մարքսիզմ-լենինիզմը ուսումնասիրողների, գիտական աշխատողների, նկարիչների, երաժիշտների, մանուկների և ուրիշների համար: Գլխավոր ընթերցասրահը երկհարկանի շենքի բարձրության մի հսկայական դահլիճ է: Միայն այս դահլիճում ավելի շատ ընթերցող է տեղավորվում, քան գրադարանի նախկին ամբողջ շենքում: Այստեղ բոլոր ընթերցասրահներում ու կաբինետներում միանգամից կարող են նստել և կարդալ մոտ չորս հարյուր ընթերցող:

Հանրային գրադարանն ունի 6 հազար ընթերցող: Միայն անցյալ տարի նրանք կարդացել են երեք հարյուր հիսուն մեկ հազար յոթ հարյուր քսան չորս գիրք:

Գրադարանի լավագույն ընթերցասրահներից է մանկականը: Այդ ընթերցարանը տեղավորված է շենքի երրորդ հարկում: Շատ պիոներներ և դպրոցականներ են հաճախում այնտեղ: Մշտական ընթերցողներից են Գ. Ջնդոյանը, Մ. Հախումյանը, Ֆ. Ղազարյանը, Ա. Մարուքյանը և շատ ուրիշ պատանիներ: Նրանք ամենից շատ կարդում են



Ստալինյան մրցանակի արժանացած գրքերը՝ «Մոսկվայից հեռու», «Պողպատ և խարամ», «Փոքրիկ», «Մենք սովետական մարդիկ ենք» և այլ գրքեր ու ամսագրեր: Մանկական ընթերցասրահում անցյալ տարի երեխաները տասնյոթ հազար գիրք են կարդացել:



Հանրային գրադարանը մեր ծաղկող ռեսպուբլիկայի գրքերի գանձարանն է: Նա Սովետական Միության խոշորագույն գրադարաններից մեկն է: Նրա բաժանորդներն են մեր Մեծ Միության շատ քաղաքների՝ Մոսկվայի, Լենինգրադի, Խարկովի, Թբիլիսիի, Բաքվի և այլ վայրերի աշխատավորներ, որոնց գրքերն ուղարկվում են փոստի միջոցով: Գրադարանի տեղեկատու բաժինը տարեկան զանազան հարցերի շուրջը քսանհինգ հազար տեղեկանք է տալիս ընթերցողներին:

Կառավարության որոշմամբ Սովետական Միության մեջ հրատարակվող բոլոր գրքերից, ամսագրերից, թերթերից ու նկարներից մեկական օրինակ անվճար ուղարկվում է ինչպես մյուս, այնպես էլ Երևանի Հանրային գրադարանին: Բացի այդ, ամեն տարի տարբեր տեղերից շատ գրքեր են գնվում, նվերներ են ստացվում: Այսպես օրինակ՝ Հանրային գրադարանում են գտնվում Մոսկվայի նախկին Լազարյան ճեմարանի, Թբիլիսիի նախկին Ներսիսյան դպրոցի, Կովկասի Հայոց հրատարակչական ընկերության, Երևանի նախկին գիմնազիաների, ինչպես նաև Ալ. Մյասնիկյանի, երաժշտագետ Ղորղանյանի, հայտնի գրող Գ. Զոհրապի և ուրիշների հարուստ գրադարանները:



Ամեն օր գրադարանն ստանում է երկու հարյուր երեք գիրք, նկար, քարտեզ, հիսունհինգ ամսագիր, երեք հարյուր վաթսուն հինգ թերթ: Այժմ Հանրային գրադարանը մոտ 2 և կես միլիոն գիրք ունի: Եթե այդ բոլոր գրքերը մի գծով շարենք կողք-կողքի, ապա շարքի ծայրը Երևանից մինչև Սևան կհասնի:

Գրքերը պահվում են մեծ դահլիճներում, որոնք գրապահոցներ են կոչվում: Բոլոր գրքերն ունեն իրենց համարները ու որոշակի տեղերը: Հանրային գրադարանում տաս անգամ ավելի շատ բնակիչ կա, քան Երևանում: Եթե ճիշտ համարն չիմանանք, տարիներով կարելի է փնտրել և չգտնել որոնած գիրքը:

Հանրային գրադարանում են գտնվում Սովետական Միության և աշխարհի շատ ժողովուրդների լեզուներով հրատարակված հազարավոր գրքեր:

Բարձր ջերմաստիճանը, ցրտությունը, չափից ավելի լույսը և փոշին խիստ կերպով կարող են անդրադառնալ գրքերի վրա: Դրա համար գրապահոցներում պահպանվում է նորմալ ջերմություն, լույս և մաքրություն: Ամեն օր օդափոխություն է կատարվում: Գրքերի թշնամիներն են բորբոսասունկերը և զանազան միջատներ ու միկրոբներ, որոնք քայքայում են թուղթը: Դրա համար գրապահոցներում գրքերի բժիշկներ կան: Նրանք հսկում են, որ գրքերը չհիվանդանան: Իսկ եթե այդպիսի դեպք է պատահում «հիվանդ» գրքերը անմիջապես առանձնացվում են և լաբորատորիաներում հատուկ դեղերով «բուժվում»:

Հազվագյուտ և արժեքավոր գրքերը պահվում են հին գրքերի բաժնում: Այդտեղի ամենափոքր գիրքը կոչվում է տպագրական լիլիպուտ: Հազար էջանոց այդ գիրքը աշակերտական ռետինի մեծություն ունի և ընդամենը հինգ գրամ քաշ: Տպագրական լիլիպուտը կարդում են խոշորացույցի օգնությամբ: Բայց գրքեր էլ կան, որոնք կարող են գրասեղանի կեսը զբաղեցնել: Այդպիսի գրքերից է «Ճաշոց գիրքը»: Այդ գրված է

գրաբար է տպագրվել է 265 տարի առաջ: Այս բաժնում առակների մի գիրք կա, որը տպագրված է մետաքսյա թղթի վրա՝ զարդարված գունավոր գեղեցիկ նկարներով: Նրանից իր ժամանակ տպագրվել է 200 օրինակ: Մեզ հասել է 85-րդ օրինակը: Այստեղ պահպանվում է նաև նշանավոր ճանապարհորդ Քրիստափոր Կոլումբոսի ճանապարհորդական օրագրի պատճենը, որի էջերը ծածկված են ծովային խեցիներով, տիղմով և ավազով:

Հնատիպ գրքերի մեջ առանձին մետաղյա պահարանում պահպանվում է աշխարհում հայերեն լույս տեսած առաջին գիրքը՝ «Պարզատումարը»: Դա օրացույց է, որի տպագրությունից անցել է 439 տարի: Նրանից մի տարի հետո լույս է տեսել «Ուրբաթագիրքը», որ դարձյալ այստեղ է գտնվում: Այդտեղի ամենանոր գիրքը 125 տարեկան է: Ապակու տակ պահպանվում է հայերեն հրատարակված աշխարհի առաջին քարտեզը: Նրա գծագրությունից անցել է 280 տարի:

Հանրային գրադարանի 30-ամյակի առթիվ բացվել է մի մեծ ցուցահանդես: Այստեղ շատ նկարների, գրքերի, դիագրամների և այլ նյութերի միջոցով այցելուները ծանոթանում են այն մեծ նվաճումների հետ, որ ձեռք է բերել մեր գրադարանը:

# ԴՊՐՈՑԻ ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿՆԵՐԸ

*Բ. ԱԶԻԶՅԱՆ*
*Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ*

*Լուսանկ. ՆԵՄՐՈՒԹԻ*




Երևանի Գրիբոյեդովի անվան դպրոցի բասկետբոլի դաշտում ուժեղ մրցում էր գնում:

— Հենրի՛կ, մի՛ ուշացրու, փոխանցի՛ր,— լսվում է դաշտի ձախ կողմից:

Դա Ռազմիկն էր: Նա օղակի մոտ կանգնած սպասում էր, թե ե՞րբ պետք է իր խաղընկեր Հենրիկը գնդակը փոխանցի իրեն: Բայց Հենրիկն ինքն էր ուզում գնդակն օղակի մեջ գցել: Նա չի կարողանում պայքարել իր երկու հակառակորդի դեմ, վերջիվերջո տեղի է տալիս: Գնդակն անցնում է մյուս թիմի խաղացողների ձեռքը:

— Ինչո՞ւ չէիր փոխանցում գնդակը,— հուզված հարցնում է Ռազմիկը,— դու տեսնում էիր չէ՞, որ ես ազատ կանգնած եմ:

— Այո՛, բայց կենտրոնից գնդակը ես էի բերել օղակի մոտ և ես էլ ուզում էի գցել մեջը:

— Հենրի՛կ, դու ճիշտ չես,— մոտենալով նրանց խոսակցության մեջ մտավ Կառլենը,— չէ՞ որ դու ամբողջ կոլեկտիվի համար ես խաղում և ոչ թե քեզ համար: Ընկերոջդ հաղթանակը քո հաղթանակն է:

Տղաների վեճն ընդհատեցին դաշտի մյուս կողմում հավաքված երեխաների ուրախ ու զիլ բացականչությունները: Նրանց հակառակորդ թիմի տղաներն էին, որ գեղեցիկ փոխանցումներով գնդակը մոտեցրել էին օղակին: Հենրիկի երեք ընկերներն իրենց մրցակիցներին խանգարելու նպատակով, միանգամից վազել էին դեպի գնդակը: Սակայն հենց այդ ժամանակ հետևել էր գնդակի ճիշտ փոխանցումն ազատ կանգնած խաղացողին և գնդակն օղակի մեջ էր:

— Այ, տեսա՞ր, Հենրի՛կ, տեսա՞ր, թե ինչպես կոլեկտիվ խաղը միշտ ավելի լավ արդյունքի է հասցնում,— մի փոքր լռությունից հետո ասաց Ռազմիկը:

— Ես ոչինչ չտեսա,— հուզված պատասխանեց Հենրիկը:

Բայց նրա դեմքից պարզ երևում էր, որ նա սկսում է գիտակցել իր սխալը:

Այդ ժամանակ խաղը նորից արագ

տեմպ էր ընդունում: Ռազմիկն ու Հենրիկը միասին վազեցին դեպի դաշտի կենտրոնը: Այս անգամ գնդակն արագ վազքով կենտրոնից օղակի մոտ բերեց Ռազմիկը: Նրան շրջապատեցին հակառակորդ թիմի խաղացողները:

— Հենրի՛կ, վերցրու, շո՛ւտ,—գոչեց Ռազմիկը:

Մենակ կանգնած Հենրիկը չէր սպասում, որ Ռազմիկն օղակի մոտ գնդակն իրեն կփոխանցի: Չէ՞ որ նա էր կենտրոնից գնդակը հասցրել օղակի մոտ և նա էլ կարող էր գցել օղակի մեջ: Սակայն գնդակն արդեն իր ձեռքումն էր և ոչ ոք նրան չէր խանգարում: Հենրիկը գնդակը հաջողությամբ գցեց օղակի մեջ:

— Կեցցե՛ս, Հենրիկ, կեցցե՛ս,—այս ու այն կողմից լսվում էր տղաների ձայնը:

«Մի՞թե ես եմ կեցցեների արժանի,— վազելով դեպի դաշտի կենտրոնը մտածում էր Հենրիկը,— չէ՞ որ Ռազմիկն է հաղթանակը տարել»:

Գնդակը նորից Ռազմիկի ձեռքին է: Նա արագ փոխանցում է Կառլենին, վերջինս Հենրիկին: Ահա նա օղակի մոտ է: Մյուս կողմը, ավելի հարմար տեղում, կանգնած է Ռազմիկը: Հենրիկը գնդակն ուղարկում է դեպի Ռազմիկը: Վերջինս այն գեղեցիկ կերպով անցկացնում է օղակով: Նորից բացագանչություններ: Հենրիկը մոտենալով Ռազմիկին սեղմում է նրա ձեռքը:

— Խաղում է ամբողջ թիմը, հաղթում է ամբողջ կոլեկտիվը:




— Շարվի՛ր,—հնչում է դպրոցի ֆիզկուլտուրայի դասատուի ձայնը:

Գրիբոյեդովի անվան դպրոցի աշակերտները մի քանի րոպեում գեղեցիկ շարքեր են կազմում դպրոցի բակում:

— Առաջին շարժումը՝ ձեռքերը վեր...

Եվ ֆիզկուլտուրայի դասատուն մանրամասն բացատրում է լիցքային վարժությունը: Նրանից հետո վարժությունը կրկնում են բոլոր աշակերտները:

— Այժմ երկրորդ շարժումը,— նորից դասատուն ցույց է տալիս, թե ինչպես պետք է կատարեն այդ վարժությունը: Եվ նորից դպրոցականները համաչափ շարժումներով մի քանի անգամ կրկնում են այն:

Այսպես Գրիբոյեդովի անվան դպրոցի աշակերտներն ամեն օր առավոտյան դասերից առաջ 10—12 րոպե լիցք են անում:

— Լիցքային վարժությունն ինձ համար արդեն անհրաժեշտություն է դարձել,— ասում է ֆուտբոլի թիմի անդամ Մուավիկ Պետրոսյանը:



Դպրոցի ֆիզկուլտուրայի դասատու Խ. Գևորգյանը պատմում է, թե ինչպես բասկետբոլի խմբակը շահեց առաջին տեղը և նվաճեց փոխանցիկ գավաթը:

— Ճի՛շտ է, Մուավի՛կ,— արձագանքում է Յուրիկը,—ա՛յ, օրինակ՝ որ օրը ես լիցքային վարժություն չեմ կատարում, ինձ մի տեսակ վատ եմ զգում, կարծես հիվանդ լինեմ, իսկ դասի ժամանակ քունս տանում է:

— Յուրի՛կ,—մոտենալով տղաներին ասում է Գևորգը,—հիշո՞ւմ ես, որ առաջ չէիր ուզում մասնակցել լիցքային վարժություններին, իսկ այժմ ինքդ ես ուրիշներին խորհուրդ տալիս:

— Այո, ճիշտ է. ես համոզվեցի, թե ինչքա՜ն օգտակար է ֆիզկուլտուրան ինձ համար: Ես այժմ ֆուտբոլ էլ եմ սկսել խաղալ:

Լիցքային վարժությունից հետո տղաները ուրախ ու զվարթ տրամադրությամբ մտան դպրոցի շենքը:

# Սպորտային սեկցիաները

Դասերից հետո տղաները շատ են սիրում հաճախել դպրոցում կազմակերպված սպորտային սեկցիաների պարապմունքներին: Հատուկ մշակված ուսացույցային պլանով աշակերտներն այստեղ կարող են զբաղվել սպորտի այն ձևով, որն իրենց ավելի է դուր գալիս:

Սհա Ռազմիկ Հակոբյանը: Նա երկրորդ տարին է, ինչ հաճախում է բասկետբոլի սեկցիայի պարապմունքներին և արդեն առաջնակարգ բասկետբոլիստ է: Մարատը մասնակցում է վոլեյբոլի սեկցիայի պարապմունքներին, Գևորգը՝ թեթև ատլետիկային, իսկ Նորիկն այնպիսի ճարպիկ ու գեղեցիկ վարժություններ է կատարում մարմնամարզական գործիքների վրա, որ դիտողին հիացմունք է պատճառում:

— Օրերն արդեն տաքացել են: Շուտով կսկսենք նաև լողով պարապել,—ասում է ֆիզկուլտուրայի դասատուն. տղաներն ամեն օր խնդրում են լողի սեկցիա կազմակերպել, լողը շատ են սիրում:

Դպրոցում առանձնապես մեծ հարգանք են վայելում պատանի ֆուտբոլիստներն ու բասկետբոլիստները: Չէ՞ որ այդ նրանք են, որ հաղթանակներ են տարել քաղաքի մի շարք դպրոցների թիմերի հետ մրցելիս:

Գրիբոյեդովի անվան դպրոցի աշակերտներին սպորտային հաջողությունների հասնելու գործում մեծ չափով օգնում են շատ լավ կահավորված սպորտային դահլիճը և իրենց երեխաների ձեռքերով պատրաստված հրաշալի սպորտային հրապարակը:

— Մեր դպրոցական ստադիոնում կարելի է պարապել սպորտի բոլոր ձևերով,— օրինակաև հպարտությամբ ասում են դպրոցի ֆիզկուլտուրնիկները:

— Մենք ունենք բասկետբոլի ու վոլեյբոլի հրապարակներ, վազքուղիներ, բոլշքի փոսեր, արգելաշերտեր ու մարմնամարզական անկյուն: Ֆիզկուլտուրայի դահլիճի մի



Դպրոցի սպորտ դահլիճում: Ժ. Ադաջանյանը զուգափայտի վրա վարժություն կատարելիս:

անկյունում կա մի պատվո տախտակ, որի վրա փակցված են 8 պատվոգիր, շնորհակալագրեր, իսկ շրջանակի վերին մասում, կողք-կողքի շարված են արծաթե 3 գավաթ:

Այսպես են աշխատում Գրիբոյեդովի անվան դպրոցի ֆիզկուլտուրնիկները:

Այս բոլորը օգնում են նրանց քաղաքային թե ռայոնական սպորտային մրցություններում լուրջ հաղթանակներ տանել:




ՀԱՅԿ ԲԱԴԱԼՅԱՆ
(Ավագ գիտ. աշխատող)

Ժամանակ առ ժամանակ աստղազարդ երկնակամարում երևան են գալիս յուրահատուկ բնույթ ու տեսք ունեցող երկնային լուսատուներ: Դրանք կոչվում են գիսավոր աստղեր: Կան գիսավոր աստղեր, որ միայն մի անգամ են երևում և ապա անհայտանում տիեզերական անհուն տարածության մեջ: Այդպիսիները Արեգակնային համակարգությանը չեն պատկանում: Կան նաև այնպիսի գիսավոր աստղեր, որոնք երկնակամարում երևան են գալիս որոշակի պարբերությամբ: Վերջիններս պատկանում են Արեգակնային համակարգության, այսինքն, պտտվում են Արեգակի շուրջը: Արեգակի շուրջը պտտվող գիսավոր աստղերի պտտման տևողությունը լինում է մի քանի տարուց մինչև հազարավոր տարիներ:

Շատերը լսած կլինեն Հալլեյի նշանավոր գիսաստղի մասին, որը վերջին անգամ երևացել է 1910 թվին: Այդ գիսավորը Արեգակի շուրջը մի լրիվ պտույտ է կատարում 75—76 տարում:

Նրա առաջիկա գալուստը սպասվում է 1986 թվականին:

Հետաքրքրական է, թե մեր նախնիներն ինչպես էին պատկերացնում գիսավոր աստղերը:

Հայտնի է, որ շատ վաղ ժամանակներից սկսած, մարդիկ մեծ հետաքրքրությամբ հետևել ու զբաղվել են մի շարք երկնային ուշագրավ երևույթներով, ուսումնասիրել են խավարումները, «վայր ընկնող-աստղերը», երկնաքարերը և ամենից շատ գիսավոր աստղերը: Քանի դեռ զարգացած չէր աստղագիտությունը, հայտնի չէին երկնային մարմինների շարժման օրենքները. բնական է, որ մարդիկ գիսավոր աստղերի մասին աղոտ պատկերացում ունեին: Գիսավորների երևալը նրանք համարում էին երկրաշարժի, ջրհեղեղի, համաճարակ հիվանդությունների և այլ աղետների նշան:

Գիսավոր աստղերի հետ կապված գուշակությունները ավելի լայն ծավալ ստացան առանձնապես միջին դարերում: Անհավատ մարդիկ սարսափում էին, երբ գիսավոր աստղ էր երևում: Նրանք կարծում էին, թե պետք է ընդհարվի երկրի հետ և կործանի նրան:

Շատերը ենթադրում էին, թե գիսավոր աստղերը վարակում են մթնոլորտը և վարակը տարածում մարդկանց մեջ: Դրանից էլ առաջանում են համաճարակները: Բայց այդ նախապաշարումները ոչ մի հիմք չունեին:

Նկ. ԱՆ. ՉՈՐԴԱՋՅԱՆԻ

Աստղագետները 1577 թվականին հայտնված գիսավոր աստղը մի քանի վայրերից դիտել են և սրոշել, որ գիսավորներն ավելի հեռավոր մարմիններ են, քան Լուսինը: Հետևաբար նրանք Երկրի մթնոլորտային երևույթ լինել չեն կարող: Նրանք երկնային մարմիններ են, որոնք շարժվում են տիեզերական անհուն տարածության մեջ:

Հետագայում, երբ հնարեցին հեռադիտակը, հնարավորություն եղավ մեծ թվով գիսավորներ հայտնաբերել և ուսումնասիրել:

Աստղագետ Կեպլերն այն միտքն է հայտնել, որ գիսավոր աստղերը երկնային տարածության մեջ այնքան են, որքան ձկները՝ օվկիանոսներում:



1843 թվականին հայտնված մեծ գիսաստղը:

Քանի դեռ հայտնի չէր տիեզերական ձգողական ուժի օրենքը, գիսավորների շարժումների վերաբերյալ կային տարբեր ենթադրություններ: Նյուտոնը ապացուցել է, որ ինչպես մոլորակներն են շարժվում Արեգակի շուրջը, այնպես էլ գիսավոր աստղերը, միայն այն տարբերությամբ, որ Արեգակի շուրջը բոլորվող գիսավոր աստղերի գծած ճանապարհները՝ օրբիտներն ավելի ձգված էլիպսներ են, քան մոլորակների օրբիտները:

Դրանից հետո աստղագետները գիսաստղերը դի-

տելու միջոցով որոշել են նրանց շարժման ճանապարհների ձևը: Գիսավոր աստղերի շարժման ճանապարհները միատեսակ չեն: Նրանց շարժումները կատարվում են էլիպսաձև, պարաբոլաձև և հիպերբոլաձև օրբիտներով:

Այնուհետև հետաքրքրական է իմանալ, ինչպիսի՞ արագությամբ են շարժվում գիսավոր աստղերը տարածության մեջ:

Քանի որ պարբերական գիսավորները շարժվում են ձգված էլիպսաձև օրբիտներով, բնական է, որ Արեգակին մոտենալիս, ձգողական ուժի շնորհիվ, նրանց արագությունը սկսում է մեծանալ, իսկ հեռանալիս՝ փոքրանալ: Այլ կերպ ասած՝ արևամոտ կետում նրանց արագությունը հասնում է առավելագույն չափի:

Հայտնի է, որ Երկրագունդը Արեգակի շուրջը մեկ վայրկյանում բոլորվում է 30 կիլոմետր արագությամբ: Իսկ 1843 թվականին հայտնված նշանավոր գիսավորն արևամոտ կետում եղած ժամանակ ունեցել է շատ մեծ արագություն, որը մեկ վայրկյանում հասել է 550 կիլոմետրի: Հալլեյի գիսավորն արևամոտ կետում մեկ վայրկյանում ունեցել է 54 կիլոմետր արագություն, իսկ արևահեռ կետում՝ մեկ կիլոմետր:

Գիսավոր աստղերը կազմված են երեք հիմնական մասից՝ գլուխ, կորիզ և գես:



Սակայն կան այնպիսի բույլ պայծառություն ունեցող գիսավորներ էլ, որոնց հնարավոր է տեսնել միայն աստղադիտական գործիքներով: Գիսավորների գլուխը, կորիզը և գեսը տեսանելի են լինում միայն Արեգակին մոտ եղած ժամանակ: Արեգակից հեռու գտնվելու դեպքում, երբ նոր են սկսում երևան գալ, լուսավոր միգամածային բծի նմանություն են ունենում: Արեգակին մոտենալու հետևանքով աստիճանաբար սկսում է ձևավորվել գեսը:

Իսկ ինչո՞ւ են գիսավոր աստղերի գեսերը ձևավորվում Արեգակին մոտենալիս: Դա բացատրվում է հետևյալ կերպ. Արեգակի ձգողական ուժի ազդեցության շնորհիվ գիսավորի կորիզից դուրս են նետվում գազեր և փոքրիկ պինդ մասնիկներ, ուղղված դեպի Արեգակը: Մյուս կողմից այդ գազերը և ամենափոքրիկ մասնիկները Արեգակի ճառագայթների ճնշման հետևանքով վանվում կամ ետ են շպրտվում և կազմում գես:

Այդ է պատճառը, որ գիսավոր աստղերն Արեգակին մոտենալիս նրանց գեսերն աստիճանաբար մեծանում են, իսկ հեռանալիս՝ փոքրանում:

Հայտնի է, որ 1843 թվականին հայտնված նշանավոր գիսավոր աստղի գեսի երկարությունը հասել է մինչև 320.000.000 կիլոմետրի:

Չնայած գիսավոր աստղերը ծավալով շատ մեծ են, բայց զանգվածով չափազանց փոքր, անհամեմատ ավելի փոքր, քան ամենափոքր մոլորակի զանգվածը: Երբ նրանք բավականաչափ մոտենում են այս կամ այն մոլորակին, փոքր զանգված ունենալու հետևանքով նկատելի ոչ մի ազդեցություն չեն թողնում նրա շարժման ընթացքի վրա: Քանի որ մոլորակների զանգվածները համեմատաբար շատ ավելի մեծ են, դրա հետևանքով եղել են դեպքեր, երբ մոլորակները շատ հաճախ որոշ չափով փոխել են գիսավորների շարժման ճանապարհը և դրանով իսկ փոփոխել նաև նրանց շարժման պարբերաշրջանի տևողությունը: Մոլորակներից ուժեղ ազդեցություն է գործում Յուպիտերը: Յուպիտերի զանգվածը մյուս մոլորակների զանգվածից շատ մեծ է. օրինակ՝ Երկրի համեմատությամբ՝ 317 անգամ: Եղել է այնպիսի դեպք, երբ Յուպիտերի մոտով անցնող գիսավորի շարժման ճանապարհը նկատելի չափով շեղվել է և դրա հետևանքով նրա պարբերաշրջանի տևողությունը փոխվել է մի քանի տարով:

Գիսավոր աստղերի խտությունը աննշան է, Երկրի մթնոլորտի խտության համեմատությամբ հազարավոր անգամ նոսր է: Օրինակ՝ երբ աստղերը, մոլորակները և Արեգակը ծածկվում են գիսավոր աստղերով, ապա նրանց պայծառությունը չի փոփոխվում: Հայտնի է, որ 1882 թվականին և 1910 թվականին հայտնըված գիսավորները Երկրի ու Արեգակի միջով անցնելիս ծածկել են Արեգակի սկավառակը, բայց ոչ մի կերպ նկատելի չի եղել, որ Արեգակը ծածկված է գիսավոր աստղով: Նրանց գեսերի խտությունն ավելի նոսր է: Այդպիսի նոսրություն արհեստական եղանակով դժվար է ստանալ:

Հետաքրքրական է իմանալ նաև գիսավոր աստղերի քիմիական բաղադրության մասին: Սպեկտրալ անալիզի օգնությամբ նրանց մեջ հայտնաբերված է ածխածնի օքսիդ, ցիան, ազոտ և մի քանի այլ էլեմենտների հետքեր:

Երկիրը գիսաստղերի գեսի հետ հանդիպելու կամ նրա միջով անցնելու հետևանքով կարող է առաջանալ ասուպային (մետեորական) հոսք կամ, այսպես կոչված, «աստղային անձրև»: Այդպիսի դեպքեր շատ անգամ են դիտվել:

# ԲԺՇԿՈՒԹՅԱՆ ՄԵԾԱԳՈՒՅՆ ՆՎԱՃՈՒՄԸ

Ա. ԱՅՎԱԶՅԱՆ
(Բժիշկ)

Նկ. ԱՐ. ՋԱՔԱՐՅԱՆԻ

Մի հիվանդ եկավ հիվանդանոց: Նա գանգատվում էր, թե ահա տաս տարի է, ինչ ստամոքսի խոցը տանջում է իրեն: Այդ ամբողջ ժամանակ սուր ցավերը, սրտախառնուկը,ործկոցը նրան հանգիստ չէին տալիս: Նա չէր կարողանում ուտել ոչ մի կծու, թթու, յուղոտ և սառը բան: Փորձել էր բուժվել տարբեր ձևերով, բայց ոչինչ դուրս չէր եկել:

Հիվանդանոցում բուժման նոր մեթոդ առաջարկեցին հիվանդին: Նրան պառկեցրին վիրահատման սեղանին, մեջքից սրսկեցին: Մարմնի այդ մասն անզգա դարձավ: Հետո կտրեցին մաշկը և նրա տակ դրին... ոչխարի փայծաղի մի կտոր, ապա կտրվածքը կարեցին:

Հիվանդը համարյա ոչինչ չզգաց և հանգիստ գնաց տուն: Մի շաբաթ հետո կարերը քանդեցին և կտրվածքը բոլորովին լավացավ: Մի ամիս անց հիվանդը եկավ հիվանդանոց ու պատմեց, թե անցել են և՛ ցավերը, և՛ սրտախառնուկը, և՛ործկոցը: Ռենտգենյան ապարատը ցույց տվեց, որ ստամոքսում խոց չկա:

Որպեսզի հասկանալի դառնա, թե ինչու մաշկի տակ դրված ոչխարի փայծաղի կտորն այդպես օգնեց հիվանդին, պետք է պատմել բուժման նոր մեթոդի հայտնագործման պատմությունը:

Երկրագնդի վրա միլիոնավոր մարդիկ վատ են տեսնում կամ բոլորովին չեն տեսնում, որովհետև նրանց աչքի թափանցիկ եղջերաթաղանթի վրա սպիտակ բիծ է լինում, որը թույլ չի տալիս լույսի թափանցումը դեպի բիբը: Այդ բիծը կոչվում է աչքի հատ: Աչքի հատը ոչ մի բանով բուժել չէր հաջողվում: Ակնաբույժներն արդեն վաղուց սկսել են մտածել այն մասին, որ հարկավոր է կտրել հանել եղջերաթաղանթի մի մասը՝ աչքի հատի հետ միասին և նրա տեղը դնել առողջ աչքի եղջերաթաղանթի մի կտոր:



Եղջերաթաղանթի տեղափոխման ամենահաջող վիրահատումները կատարել է սովետական խոշորագույն գիտնական, ակադեմիկոս Վ. Պ. Ֆիլատովը: Այդպիսի վիրահատում կատարելու համար հարկավոր է առողջ աչքի եղջերաթաղանթ: Բայց այնքան էլ հաճախ չեն լինում դեպքեր, երբ ինչ որ պատճառով հեռացնում են աչքերը, որպեսզի այդ աչքի եղջերաթաղանթն օգտագործվի: Կենդանիների աչքի եղջերաթաղանթն էլ հարմար չէ: Եվ ահա ակադեմիկոս Վ. Պ. Ֆիլատովը փորձեց վերցնել հենց նոր մեռած մարդու աչքի եղջերաթաղանթը: Փորձը հաջողվեց:

Բացի այդ Վ. Պ. Ֆիլատովը նկատեց, որ երբ եղջերաթաղանթը միանգամից չտեղադրի, այլ նախապես մի քանի օր սառնամանիքում պահի, ապա ավելի լավ է ստացվում: Նույնիսկ երբ եղջերաթաղանթը դնեն ոչ թե հենց աչքի հատի վրա, այլ նրա կողքը, աչքի հատի գույնն սկսում է բացվել և հաճախ բոլորովին անհետանում է: Կույրը նորից նորմալ կերպով սկսում է տեսնել:



Ակադեմիկոս Վ. Պ. Ֆիլատովը նրա աշակերտները և շատ ուրիշ գիտնականներ պարզեցին, որ քանի դեռ եղջերաթաղանթը գտնվում է սառնամանիքում նրա մեջ առաջանում են հատուկ նյութեր (Վ. Պ. Ֆիլատովը նրանց անվանեց բիոգեն խթանիչներ), որոնք պայքարում են սառնամանիքի դեմ, որպեսզի եղջերաթաղանթը շարունակի ապրել: Իսկ երբ եղջերաթաղանթը դնում են աչքի հատի կողքը, բիոգեն խթանիչները տարածվում են ամբողջ աչքի վրա և սկսում պայքարը աչքի հատի դեմ: Բիոգեն խթանիչները հաղթում են և աչքն առողջանում է:

Բազմաթիվ փորձերը ցույց տվին, որ այդ նույնը կարելի է կատարել ոչ միայն եղջերաթաղանթի, այլև մարմնի ուզած մասի կտորվածքի հետ (գիտնականները հյուսվածք են անվանում): Նշանակում է, երբ վերցնենք մի կտոր հյուսվածք (ասենք թե մաշկի, փայծաղի և այլն) և մի շաբաթ պահենք սառնամանիքում, ապա նրա վրա առաջ կգան բիոգեն խթանիչներ: Երբ այդ հյուսվածքը դնենք հիվանդ մարդու մաշկի տակ, բիոգեն խթանիչները կթափառեն ամբողջ օրգանիզմում, կսկսեն պայքարը տարբեր հիվանդությունների դեմ:

Բուժման այդ մեթոդը կոչվում է հյուսվածքային թերապիա: Այժմ հյուսվածքային թերապիան շատ լայն չափով կիրառվում է ամբողջ Սովետական Միության մեջ: Այդ ասպարեզում հետաքրքրական և արժեքավոր արդյունքների է հասել Ռոստովի մարզի Բոգաևսկի ստանիցայի բժիշկ Գ. Ե. Ռումյանցևը:

Հյուսվածքային թերապիայով բուժում են աչքի և մաշկային հիվանդությունները, ներվային համակարգությունը, բրոնխային շնչարգելությունը, ստամոքսի խոցը, թծավոր տիֆը և շատ այլ հիվանդություններ: Հյուսվածքային թերապիայով բուժվելուց հետո հիվանդն ավելի առույգ և եռանդուն է դառնում:

Մեզ մոտ՝ Հայաստանում հյուսվածքային թերապիան կիրառում են 1-ին, 2-րդ և 3-րդ հիվանդանոցներում, 1-ին, 3-րդ և 4-րդ պոլիկլինիկաներում, ռազմական հոսպիտալներում:

Հյուսվածքային թերապիայով բուժելը— սովետական բժշկության նշանավոր նվաճումն է:



1. Անձրև, մանավանդ ձյուն գալու ժամանակ օդի ջերմաստիճանն ավելի բարձր է լինում. ինչո՞ւ:

2. Ցուրտ երկրների բնակիչները ցրտից պաշտպանվելու համար ձմռանը տաք մուշտակներ են հագնում: Շոգ երկրների բնակիչները շոգից պաշտպանվելու համար ամառը բամբակյա հագուստ են հագնում. ինչո՞ւ:

3. Ձյունը շուտ հալեցնելու համար նրան աղ են խառնում: Պաղպաղակը շուտ սառեցնելու համար սառույցին դարձյալ աղ են խառնում. ինչո՞ւ:

4. Շոգ օրերին խմելու ջուրը սառեցնելու համար մարդիկ ջրի ամանը փաթաթում են թրջված շորով. ինչո՞ւ:

5. Մրսելիս մարդ կուչ է գալիս և այդպիսով մի քիչ տաքանում է. ինչո՞ւ:

6. Փոքրիկ քարը ընկնելով գետի մեջ իսկույն սուզվում է, իսկ հսկայական ծանրություն ունեցող նավը մնում է ջրի երեսին. ինչո՞ւ:

7. Երբ հաստ պատեր ունեցող բաժակների մեջ եռացող ջուր են լցնում, նրանք հաճախ կոտրվում են. ինչո՞ւ:

8. Թերմոսի մեջ լցրած տաք հեղուկը տաք է մնում, իսկ սառ հեղուկը սառ. ինչո՞ւ:

9. Կեղտոտ ձյունը ավելի շուտ է հալվում, քան մաքուր ձյունը. ինչո՞ւ:

10. Բոլորը գիտեն, որ ջուրը կրակը հանգցնում է. ինչո՞ւ:

11. Բոլորին հայտնի է, որ էլեկտրական հոսանք ունեցող լարի դիպչելիս, մարդիկ և կենդանիները վնասվում են: Բայց դուք շատ տեսած կլինեք, թե ինչպես են թռչունները նստում էլեկտրական լարերի վրա և նրանց ոչինչ չի պատահում. ինչո՞ւ:



## ՊԱՏԱՍԽԱՆԵՑԵՔ

1. Քանի՞ ձևով կարելի է դասավորել վեց առարկան և քանի՞ ձևով՝ յոթ առարկան:

2. Կարելի՞ է սառույցի միջոցով կրակ առաջացնել:

3. Ինչո՞ւ էլեկտրական լամպի ուժեղ շիկացած թելիկները երկար ժամանակ չեն այրվում:

4. Ջուրը բաղկացած է ջրածնից և թթվածնից: Ջրածինն այրվում է, իսկ թթվածինը նպաստում է այրմանը. ինչո՞ւ ջուրը չի այրվում:

5. Սեղանի վրա դրված էր երկու բաժակ. նրանցից մեկը լցված էր կարմիր, իսկ մյուսը՝ կապույտ լակմուսի լուծույթով:

Աշակերտներից մեկն ապակե ձողը թրջեց ինչ որ հեղուկով ու նրանով խառնեց կարմիր լակմուսի լուծույթը: Լուծույթը կապտեց:

Մի ուրիշ աշակերտ ապակե ձողը մի այլ հեղուկով թրջեց ու նրանով խառնեց կապույտ լակմուսի լուծույթը: Լուծույթը կարմրեց:

Ի՞նչ նյութով էր թրջել ձողն առաջին աշակերտը և ի՞նչ նյութով՝ երկրորդ աշակերտը:

6. Սուրիկը հեղուկով թրջած ապակե ձողով

խառնեց բաժակի անգույն հեղուկը: Հեղուկը կարմրեց: Ռաֆիկը հեղուկով թրջած մի այլ ապակե ձողով խառնեց այդ հեղուկը՝ հեղուկը անգույն դարձավ:

Ի՞նչ կար բաժակի հեղուկի մեջ, ի՞նչ նյութով էր թրջել Սուրիկն ապակե ձողը և ի՞նչ նյութով Ռաֆիկը:

*Ա. ԱԹԱՆԱՍՅԱՆ*



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապկի առաջին էջում՝ «ՇՏԱՊՈՒՄ ԵՆ ՇՔԵՐԹԻ»
Նկար՝ արվեստի վաստ. գործիչ Մ. ԱԲԵՂՅԱՆԻ


„ПИОНЕР“

№ 5

ЖУРНАЛ ДЛЯ ПИОНЕРОВ И ШКОЛЬНИКОВ

Орган ЦК ЛКСМ Армении

Год издания 23-ий, май, 1951 г. Ереван

*Խմբագիր՝* ԳԱՐ. ՍԵՎՈՒՆՑ

*Խմբագրական կոլեգիա՝* ՍԻՄԱԿ, Ա. ՄՈՎՍԻՍՅԱՆ, Գ. ՀԱԿՈԲՅԱՆ, Ս. ՕՀԱՆՅԱՆ, Վ. ԱՆԱՆՅԱՆ, Վ. ԲԱՐԱԽԱՆՅԱՆ, Վ. ՏԱԼՅԱՆ, Է. ՍԻՄՈՆՅԱՆ, ՀՐ. ԲՍՏԻԿՅԱՆ, Է. ԻՍԱԲԵԿՅԱՆ

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*
*ՎՖ 01085, Պատվեր 269. Տիրաժ 5000. Տպագրական 2¼ մամուլ, հեղինակային 2 մամուլ. 1 մամուլում 45.200 տպ. նիշ: Արտադրության է հանձնված 12/IV—51 թ.: Ստորագրված է տպագրության 30/IV—51 թ.:*

*Հայպոլիգրաֆհրատավարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1951 թ.:*



Սովետական Միության կրկնակի Հերոս Նելսոն Ստեփանյանի արձանի մոտ:
Արձանը կանգնեցված է Երևանի Կիրովի անվան մանկական այգում:

Լուսանկ. Վ. ՍԵՎՈՅԱՆԻ և Վ. ԱՄԱԼՅԱՆԻ